 ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴԸ 



ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

★ ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԷ ★

---

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ

## ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

## բարի եւ երջանիկ տարի

---

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ

## ՀՐԱՉ ՍԻՄՈՆԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

## բարի եւ երջանիկ տարի

---

ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ
ԳԸՋԸԼԵԱՆ-ԿԻՎՐԷԿԵԱՆ
Գահիրէ

GYMPEX
ԷՏՈՒԱՐ ՄԵԼԻՔԵԱՆ
Գահիրէ

ՃԱՐՏ. ՅԱԿՈԲ ԻՐԱՏԵԱՆ
ՃԱՐՏ.ՀԻ ԼԵՆԱ ԻՐԱՏԵԱՆ
ՄԱՍՆԱԳԷՏՆԵՐ ԳՈՄՓԻՈՒԹԸՐԻ
Գահիրէ

SARWAT STATIONARY
ԳՐԵՆԱԿԱՆ ՊԻՏՈՅՔՆԵՐ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀՐԻՃ ՃԷՐԷՃԵԱՆ
Պէյրութ

ՆԱՅԼ
ՔՐՈՔՈՏԱՅԼ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԳԷՈՐԳ ԷՔՍԷՐՃԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԵԴՈՒԱՐԴ ԱՒԱԳԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱՄ ԳՈՒԹՆՈՒԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԼԵՒՈՆ ԵԿԱՒԵԱՆ
Լոս Անճելըս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԴԱՒԻԹ ՄԻՐԶԱՅԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԹՕ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԻԿԻՆ
ԺԱԳԼԻՆ ՓԱՐԹԱՄԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ՔԷՉԷՃԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ԱՐԹԻՆԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ
Գահիրէ

ՆԱՍԻՊ - ԹՈՐԳՈՄ
ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐՍԷՆ ԷՄԻՐՋԵԱՆ
Հելիոպոլիս

ԺԻՐԱՅՐ ԵՒ ՄԱՐԱԼ
ՊԱԼԱԵԱՆ
Հելիոպոլիս

ԱՍԱՏՈՒՐԵԱՆ ԸՆՏԱՆԻՔ
Կիզէ

---

# Հ Ա Յ Կ Ա Կ Ա Ն





# Ը Ն Թ Ե Ր Ց Ա Ս Ր Ա Հ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ

## ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

**բարի եւ երջանիկ տարի**

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ

## ՎԱՐՈՒԺԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

**բարի եւ երջանիկ տարի**

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ

## ՏԻԳՐԱՆ ՊՕՂՈՍԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

**բարի եւ երջանիկ տարի**

**REINZ**

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ

## ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ

Ջերմագինս կը շնորհաւորեն իրենց բարեկամները,

ու սրտանց կը մաղթեն բոլորին

**բարի եւ երջանիկ տարի**

**ETALEX**

ՏԻԱՐ
ՎԱՂԱՐՇ ԶԱՔԱՐԵԱՆ
Գահիրէ

ԼԵՒՈՆ ԵՒ ՅԱԿՈԲ
ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ ԵՂԲԱՐՔ
Գահիրէ

ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ
ՄԱՐԿՐԻԹ Պ. ՅԱԿՈԲԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ՆՈՒՊԱՐ ԿԷՐԻԿԵԱՆ
Մոնդրէալ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ
Մոնդրէալ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԷՏՈՒԱՐ ՔԻՒՓԷԼԵԱՆ
Գահիրէ

ՏԻԿԻՆ
ԶԱՐՈՒՀԻ ԶՕՐԱՅԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ՕՏԱՊԱՇԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՒԵՏԻՍ ՏԷՄԻՐՃԵԱՆ
Պէյրութ

Contractor
**NABIL S. TOUTOUNGI**
Heliopolis

ՄԻՔԱՅԷԼԵԱՆ ԸՆՏԱՆԻՔ
Գահիրէ

ՄԱՐՏԻԿ ԵՒ ՌՈՒԲԷՆ
ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆ ԵՂԲԱՐՔ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՀԱՅԿ ԻՐԱՏԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԹԱԳԻՈՐ ԱՐԱՊԵԱՆ
Գալիֆորնիա

ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ
ՊԵՏՐՈՍ ՏԸՆԿՃԵԱՆ
Գահիրէ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՐԱՅՐ ՍԻՄՈՆԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՄԻՍԱՔ ՉԷՉՃԷՆԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԷՏՈՒԱՐ ԶԱՐԴԱՐԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՐՃ ԱՍԱՏՈՒՐԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԼԵՒՈՆ ՏԷՐ ՅԱԿՈԲԵԱՆ
Գահիրէ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՀԱՆՐԻ ԲԵՏԵՐԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ՄԱՆՈՒԷԼ ԿԱՐՄԻՐԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԵԼՔՈՆԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՖՐԵՏԻ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅՈՎԱԿԻՄ ՍԻՐՔԷՃԵԱՆ
Գահիրէ

ՆԿԱՐՉՈՒՀԻ
ԱՐՄԻՆԷ ԺԱՄԿՈՉԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ԳՈԼՈՅԵԱՆ
Գահիրէ

ՄԱՍՆԱԳԷՏ
ԳՈՄՓԻՈՒԹԸՐԻ
ՃԱՐՏ. ԳԷՈՐԳ ԻՐԱՏԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԱԳՆ ՏԵՓՈՅԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԺՈՐԺ ԱՒԱԳԵԱՆ
Գահիրէ

ՏՈՔԹ. ԵՒ ՏԻԿԻՆ
ՍՈՒՐԷՆ ՊԱՅՐԱՄԵԱՆ
Գահիրէ

ԱՐԹԻՆԵԱՆ ԵՂԲԱՐՔ
Գահիրէ

ԳՐԻԳՈՐ ԵՒ
ՅՈՎՀԱՆՆԷՍ
ՊԱԼԹԱՅԵԱՆ ԵՂԲԱՐՔ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՃՈՐՃ ՍԷՖԷՐԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՐԱՅՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ
Գահիրէ

ՉԷՉՃԷՆԵԱՆ ԸՆՏԱՆԻՔ
Գահիրէ

ՏԻԱՐ
ԱՐԹՕ ՍԱՐԱՖԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՄԱՐՏԻԿ ՊԱԼԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՐՈՒԺԱՆ ՏԱՏՈՒՐԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՀԱՅԿ ՆԱԳԱՇԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԻԱՐ
ՊԵՏՐՈՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ
Գահիրէ

ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ
« ԵՐՈՒԱՆԴ »
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱՄ ԱԲԻԿԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՏՐՈՍ ՈՍԿԵՐԻՉԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԳԱԼՈՒՍՏ ԱՍԼԱՆԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԻԱՐ
ՍԻՄՈՆ ՉԱՄՔԷՐԹԷՆԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ՄՈՒՐԱՏ ՖՈՒԱՏ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ՉՐԱՔԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ԷՔՍԷՐՃԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՎԱՀԷ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԻԿԻՆ
ՎՐԷԺՈՒՀԻ ՍԱՐԱՖԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ՊԵՏՐՈՍ Յ. ԳՈԳՈՐԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՕՆՆԻԿ ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԻԱՐ
ԳԷՈՐԳ ԲՐՈՒՏԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԻԿ. ԱՆԱՀԻՏ ՍԱՐԳԻՍ
ԵՒ ԴՈՒՍՏՐԸ ՍՈՆԻԱ
Հելիոպոլիս

ՏԻԱՐ
ԳԷՈՐԳ ՍԱՐԳԻՍԵԱՆ
Գահիրէ

ՕՀԱՆՆԷՍԵԱՆ ԸՆՏԱՆԻՔ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԺՈՐԺ ՍԻՄՈՆԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԲԻՒԶԱՆԴ ԲՐՈՒՏԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՊԵՏՐՈՍ ՊԵՏԻԿԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅՈԼԱԿ ԵՐԶՆԿԱՑԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԽԱՉԻԿ ԳԱՍԱՊԵԱՆ
Գահիրէ

ՏԻԿԻՆ
ՍԻՐԱՐՓԻ ՔԻԼԻՍՃԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՆՈՒՊԱՐ ՏԷՕՎԼԷԹԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԲԻՒԶԱՆԴ ՋԱՔԱՐԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԳԵՂԱՄ ԹՐԱՅԵԱՆ
Գահիրէ

ՏԻԱՐ
ԱՐԹԻՆ ՍԷՖԷՐԵԱՆ
Գահիրէ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԽՈՐԷՆ ԳԱԼԸՆԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ՅԱԿՈԲ ՀԱՄԲԻԿԵԱՆ
Հելիոպոլիս

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ
ԱՐԱ ՏԷՓՕՅԵԱՆ
Հելիոպոլիս



## Հ.Մ.Մ. - Ն.Ս.Մ.Մ.





## ՏԻԿՆԱՆՑ « ՄԱՐՕ » ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ



# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

5 ՅՈՒՆՎ. 1995


## Նոր Տարուան Առթիւ «ՋԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

*Տէր և Տիկին Յոլակ Երզնկայեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն Տիկին Լուիզ Ղազարեանի (Սոնթիլայ)։*

*Տէր և Տիկին Պերճ Սրթինեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն (օդային փոստով) իրենց աներձագին և եղբօր՝ Արժ. Տ. Զաւէն Քհնյ. Արզումանեանի (Ֆլօրիտա)։*

*Տէր և Տիկ. Սարգիս Վուզուֆեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն իրենց քրոջ՝ Տիկին Տիրուհի Գասպարեանի (Սիտնի)։*

*Պր. Պետրոս Տընկճեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ (օդային փոստով) իր սիրելի բարեկամին՝ Պր. Մարտիրոս Փափազեանի (Թորոնթօ)։*

*Տէր և Տիկին Յոլակ Երզնկայեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն (օդային փոստով) Տէր և Տիկին Նուպար Չէօփճեանի (Մելպուրն)։*

*Պր. Մուշեղ Կէրիկեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ իր քեռայրին և քրոջ՝ Տէր և Տիկին Ասքանազ Փանոսեանի Սիտնի)։*

*Տէր և Տիկին Վահան Տ. Ալեքսանեան (Աղեքսանդրիա) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն (օդային փոստով) Տիկին Սիրան Շիշմանեանի (Սիտնի)։*

*Ընկ. հի Զարուհի Զօրայեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ (օդային փոստով) իր զաւկին և հարսին՝ Տէր և Տիկին Ժիրայր Զօրայեանի (Թորոնթօ)։*

*Տէր և Տիկին Անդրանիկ Մեսրոպեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն Պր. Յարութիւն Էժտահարեանի (Երեւան)։*

*Պր. Ժան Այրասեան (Գահիրէ) մէկ տարուան, «Ջահակիր» կը նուիրէ (օդային փոստով) իր եղբօր՝ Տէր և Տիկին Սարգիս Այրասեանի (Լուկանօ - Զուիցերիա)։*

*Տէր եւ Տիկ. Օննիկ Կարիպեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն (օդային փոստով) Տիկին Արմինէ Կարիպեանի (Սիտնի)։*

*Տէր եւ Տիկին Մարտիկ Պալեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն (օդային փոստով) Պր. Ռիչըրտ Զօրայեանի (Ֆրանսա)։*

*Ընկ. Վրէժ Սէֆէրեան (Աղեքս.) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ (օդային փոստով) Պր. Սարգիս Թանագի (Սէն Լօրան - Գանատա)։*

*Տէր և Տիկին Պերճ Թուլումպաճեան (Գահիրէ) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրեն (օդային փոստով) Տիկին Սելանոյշ Պետրոսեանի (Զուիցերիա)։*

*Պր. Մինաս Պանտոյեան (Աղեքսանդրիա) մէկ տարուան «Ջահակիր» կը նուիրէ.-*

*Արժ. Տ. Յովսէփ Աւգ. Քհնյ. Հալաճեանի, Կրէտէ (Յունաստան)*

*Պր. Հրայր Յարութիւնեանի (Երեւան)*

*Տիկին Մարիէթա Մկրտիչեանի (Հայաստան)։*

## ՈՂՋՈՅՆԻ ԽՕՍՔ

(Շարունակութիւն Ա. էջէն)

Այսպէս, բազմաթիւ ճակատներու վրայ մղուող ամէնօրեայ պայքարին մէջ արտօնուած չէ ընկրկում, ներելի չէ թուլութիւն։ Մեր բոլորի առջեւ կ'երկարի մէկ ճամբայ՝ յաղթանակի փշոտ ճամբան որուն մէջ մտած ենք եւ պէտք քալենք այդ ճամբէն որպէսզի ապրի Հայ ազգը, զօրանայ ու զարգանայ հայոց հայրենիքը ու անոր հովանիին տակ Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը շարունակէ իր յաղթական գնացքը հասնելու համար իր ազգային ու մարդկային վեհ նպատակներուն ամբողջական իրականացման։

Այս առթիւ կը պարտաւորեցնենք մեր բոլոր ընկերներն ու բարեկամները որպէսզի աւելի թափով շարունակեն բերել իրենց դրական ու շինարար մասնակցութիւնը իրենց բնակած երկիրներու ընկերային, տնտեսական, արտադրական, գիտական, մշակութային, մարզական ու քաղաքական մարզերու մէջ նպաստելով իրենց երկրորդ հայրենիքի վերելքին, վերաշինութեան գործին ու ազգային ծրագիրներու յաջողութեան։ Հայը օրինակելի քաղաքացիութիւն ցուցաբերած է ամէնուրեք ու պէտք շարունակենք միշտ բարձր պահել հայուն անունը։

Շնորհաւոր, կենսունակ, յաջողութիւններով լի Նոր Տարի կը մաղթենք բոլորին։

Ս.Դ. ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԱՊԱՔԻՆՈՒՄԻ ՄԱՂԹԱՆՔ

Տեղեկացանք որ բերթիս Աղեքսանդրիոյ պատուական ներկայացուցիչ եւ ընթակից՝ Պր. Մինաս Պանտոյեան վերջերս հիւանդանոց փոխադրուած է, խնամուելու համար կարգ մը յօդացաւերէ։

Շուտափոյթ ապաքինում կը մաղթենք մեր սիրելի աշխատակիցին։

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Առ ի գնահատութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան, Մոնթրէալին ստացած ենք հետեւեալ նուիրատուութիւնները.*

| | |
|---|---|
| *Տէր և Տիկ. Շանթ Պալեան* | *500* |
| *Տէր և Տիկին Վահան Գազանճեան* | *125* |
| *Տէր և Տիկ. Զաւէն Պալեան* | *100* |
| *Տէր և Տիկ. Վահէ Պալեան* | *100* |

*Առ ի գնահատութիւն թերթիս ազգօգուտ գործունէութեան Պր. Յովհաննէս Տէր Պետրոսեան կը նուիրէ* *50*

## ՀՅԴ-Ի ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԻՒՆԸ ԿԱՍԵՑՈՒԱԾ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՄԷՋ

(Շար. Ա. էջէն)

թիւնը, որպէս տեռորիստական խումբ։ Ան նաեւ մեղադրած է հետաքննական մարմին եւ մարտական ուժեր կազմակերպելը։

Սոյն հրամանագրով փակուած են Հ.Յ. Դաշնակցութեան հրատարակած կամ հովանաւորած բոլոր թերթերը եւ խուզարկուած՝ Հ.Յ.Դ.ի հետ անմիջական առնչութիւն ունեցող բոլոր գրասենեակները։

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ՄԱՍՆԱԿՑՈՒՄ Է

(Շար. Ա. էջէն)

*անդամները հանգամանալի կերպով պարզաբանեցին հանրապետութեան արտաքին և ներքին տնտեսական քաղաքականութիւնը, բարեփոխումների ընթացքն ու ուղղուածութիւնը, տնտեսական համակարգի առջեւ ծառացած խնդիրներն ու դժուարութիւնները, պատասխանեցին ներկաներին հետաքրքրող բազմաթիւ հարցերի։ Հայ պատուիրակները Գահիրէում գտնուելու օրերին այցելել են մի շարք գործարաններ և ձեռնարկութիւններ, ծանօթացել Եգիպտոսի տնտեսութեան նուաճումներին, հանդիպումներ ունեցել եգիպտացի գործարարների հետ։*

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը։ Չէք կամ մանդա-փոստ ղրկել «M. BALAYAN»ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս։







## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| | Պարզ փոստ | օդային փոստ |
|---|---|---|
| Եգիպտոսի բաժանորդներէն | 6 Ե.Ո. | — |
| Արաբական երկիրներ | — | 5 տոլար |
| Եւրոպայի, Ամերիկայի, Գանատայի, Աւստրալիոյ եւ այլ երկիրներու բաժանորդներէն | 15 տոլար | [illegible]0 տոլար |





# ՄԱՄՈՒԼԸ ԴՊՐՈՑ Է

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1307 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 2 ՄԱՐՏ 1995 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٠٧ — الخميس ٢ مـــارس ١٩٩٥

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՈՒԽՏԸ

451 Մայիս 26ին տեղի ունեցաւ Աւարայրի ճակատամարտը։ Հաւաքական մտածողութիւն մըն էր, որ պոռթկաց Աւարայրի դաշտին վրայ այդ օր։ Ազգային ազատագրական պայքարի նոյակապ մէկ դիւցազներգութիւնն է Վարդանանքը։

Վարդանանց արիասիրտ դիւցազներու նուիրական եւ փառաւոր յաղթանակի ոգեկոչման տօնն է դարձեալ, որոնց բոցավառ եւ խնկաբոյր շունչով յայտնուեցաւ սքանչելի դրուագ մը, որ ոսկեայ տառերով անջնջելիօրէն արձանագրուեցաւ հայ ազգի փառաւոր պատմութեան մէջ։ Վարդանանց այդ շատ փոքր պատերազմը դարերու հետ ծաւալելով մեծցաւ, մեծցաւ, որ կարծէք նիւթական այս դարուն համապատասխանող հերոսամարտի մը հանգամանքը զգեցաւ եւ շահուած յաղթանակի մը փառքը ապահովեց։

Իմացական մահով անմահութեան հասնելու գեղեցիկ ու յաւերժական քայլը, հաւատքի սիրոյն, գաղափարի համար, Վարդանանց օրինակով մնաց մեր ժողովուրդին մեծագոյն առաքինութիւնը։ Այսպիսով Վարդանանց հերոսամարտը հանդիսացաւ այն անխորտակելի եւ ամուր հիմնաքարը, որուն վրայ հետագային փշրուեցան նորանոր բռնութիւններ զանազան բռնակալներու կողմէ։ Անոնք իրենց մարտիրոս նահատակութեամբ բիւրեղացուցին Հայկազեան սերունդի յաւերժացումը։

Մեր պատմութիւնը ամբողջութեան մէջ Վարդանանք մը չէ՞ արդէն. մեռնիլ չուզող ժողովուրդի մը ապրելու տենչը։ Այսօրուան գոյապայքարը Արցախի մէջ նուազ ահեղ չէ քան այն, որ մղուեցաւ Ե. դարուն: Փոխուած են միայն ժամանակը, պայմանները, անունները ոսոխներուն, միջոցները՝ մահացումի եղանակներուն։ Բայց կռիւը ի խնդիր հայապահպանութեան ընդդէմ ազգային սրբութիւններու ուրացումին, կը շարունակէ մնալ, աւելի քան երբեք, սրբազան ու կատաղի:

Ճակատագրական եւ ողբերգական զուգորդում մը կայ այս երկու իրադարձութիւններուն միջեւ, որոնք իրարմէ կ'անջատեն աւելի քան 15 դարեր: Սակայն զարմանալիօրէն կապուած են իրարու, ամբողջ ժողովուրդի մը լինելիութեան եւ ճակատագրին հետ առնչուած:

Արցախի սահմաններուն վրայ ինկող բոլոր ազատամարտիկները նոր օրերու Վարդաններ են, որոնք «Միա՛յն յաղթանակ» նշանաբանով մտան պատերազմի խրամներուն մէջ. իրենց մարմնով ու հոգիով, պաշտպանելով հողն հայրենի, եւ որոնց ոգին կը մնայ հո՛ն՝ իրենց զէնքի ընկերներուն մօտ, ուր միասին պիտի կերտեն հայուն յաղթանակը։

Վարդանանց եւ Ղեւոնդեանց այս տօնին, միակա՛մ, միա՛խորհուրդ եւ անխա՛ռն զգացումներով, յարգենք յիշատակը բոլոր մարտիրոսացող հայ ազատամարտիկի, եւ ուխտե՛նք մարտնչիլ Վարդանանց ոգիով, վասն հաւատոյ եւ հայրենեաց ապահովութեան, վասն խաղաղութեան...։

Վարդանանք հաւատարիմ իրենց գերագոյն ՈՒԽՏԻՆ, յաւերժութիւն տուին հայ բազմաչարչար ազգին, եւ այսօր իրենց այդ ՈՒԽՏԻ խորախորհուրդ պատգամն է որ կը ներշնչէ մեր ազգի բոլոր զաւակներուն: Եւ որքան փորձենք աւելի խորանալ անմահ Վարդանանց հերոսամարտի խորհուրդին մէջ, այնքան աւելի թանկարժէք եւ անգնահատելի գանձեր պիտի յայտնուին, թէ՛ ազգային եւ թէ՛ հոգեկան արժէքներով:

Պահենք հարազատօրէն եւ փարուած մնանք Վարդանանց ՈՒԽՏԻՆ, մշտնջենաւորելու համար մեր ազգի գոյութիւնը։

Փա՜ռք Վարդանանց անմահ զօրավարաց:
Յիշատակն արդարոց օրհնութեամբ եղիցի։

ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

## ՆՈՐ ՈՏՆՁԳՈՒԹԻՒՆՆԵՐ ՍԱՀՄԱՆՆԵՐՈՒ ՎՐԱՅ

Անցնող Շաբաթ եւ Կիրակի օրերուն ատրպէյճանական բանակային կազմաւորումները անգամ մը եւս խախտած են զինադադարը Հայաստանի հիւսիսային եւ հիւսիս արեւելեան սահմաններուն վրայ։

Հայաստանի պաշտպանութեան նախարարութեան տուեալներուն համաձայն, տարբեր տեսակի զէնքերով գնդակոծուած եւ հրետակոծուած են Տաուշի շրջանի Չինարի գիւղի պաշտպանական դիրքերը։ Եղած են տուժողներ։

Հրադադարի խախտում արձանագրուած է Կրասնոսելսկի շրջանին մէջ, ուր հակառակորդը 50 վայրկեան գնդակոծած է Վահան գիւղի պաշտպանական դիրքերը։ Ատրպէյճանական զինեալները կրկին անգամ կրակի թիրախ դարձուցած են Տաուշի շրջանի Չինարի գիւղը։

Երեք դէպքերու պարագային ալ, Հայաստանի սահմանապահները ստիպողութեան տակ գտնուած են դիմելու պատասխան գործողութիւններու։

## ՎԱՐԴԱՆԱՆՑ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

*Անցեալ Կիրակի, 26 Փետր.ի երեկոյեան Հայ Գեղ. Միութեան մէջ տեղի ունեցաւ ոգեկոչում Վարդանանց Հերոսամարտի, կազմակերպութեամբ՝ Հ.Գ.Միութեան, Կոկանեան Սրահի և Հայկ. Ընթերցասրահի վարչութեանց։ Տեղի ունեցաւ գեղարուեստական յայտագիր։ Օրուան բանախօսն էր Տոքթ. Կարօ Անսուրեան (յատկապէս հրաւիրուած Աղեքսանդրիայէն)։*

*Մանրամասնութիւնները յաջորդ թիւով։*

## ՔԱՋՆ ՎԱՐԴԱՆ ՄԱՄԻԿՈՆԵԱՆ



Դարերը կ'անցնին՝ բայց Վարդանը Քաջ,
Բայց Վարդա՛նը Սուրբ, կ'երթայ միշտ առաջ...:

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

## ՇՆՈՐՀԱՒՈՐՈՒԹԻՒՆ

Վարդանանց ոգեշունչ տօնին առթիւ, «Ճահակիր» ջերմօրէն կը շնորհաւորէ իր այն աշխատակիցները, ընթերցող բարեկամներն ու բոլոր հայրենակիցները, որոնք կը կոչուին Վարդան, Ղեւոնդ, Վահան, Խորէն, Վազգէն, Ներսէս, Արտակ, Գիւտ, Թաթուլ, Արշաւիր, Շմաւոն, Տաճատ, Ատոմ, Կարէն, Խոսրով, Հայկ, Հմայեակ, Տիգրան, Ներսէս, Արսէն, Շուշան եւ այլ հայկական անուններով, որոնք մասնաւոր տօնակատարութեան օր չունին մեր օրացոյցին մէջ։

## ՀՀ ԳԵՐԱԳՈՅՆ ԽՈՐՀՈՒՐԴԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՅԵՏԱՁԳՈՒԱԾ

*ԵՐԵՒԱՆ, ԻԹԱՐ-ԹԱՍՍ.— Փետրուար 14ին, Հայաստանի խորհրդարանը յետաձգելով նախորդ ընտրութեանց թուականը, նշանակեց յառաջիկայ Յուլիս 5-ը, որպէս Ազգային Ժողովի ընտրութեան թուական։*

*Ժողովի ընթացքին 140 թեր, 2 դէմ ձայնով, առաջին ընթերցումով, ընդունուեցաւ աշխատանքային խումբին մշակած ընտրութիւններու օրինագիծը, գլխաւոր վիճելի հարցերու լուծումը թողելով յետագային:*

## ՆԱԽԱՍՏՈՐԱԳՐՈՒԵԼ Է ՀԱՄԱՁԱՅՆԱԳԻՐԸ

*Արմէնփրէսը, հենուելով ԻԹԱՐ-ԹԱՍՍ ի տեղեկատուութեան վրայ, հաղորդում է, որ ԵՀԴԿ Մինսքի խմբի միջնորդութեամբ և Ռուսաստանի ու Շուէտիայի համանախագահութեամբ Լեռնային Ղարաբաղի հարցով Մոսկովեան բանակցութիւնների մասնակիցները Շաբաթ օրը նախաստորագրել են գերիների և պատանդների ազատ արձակման համաձայնագիր։*

*Այդ մասին յայտնել է բանակցութիւններում Ռուսաստանի Դաշնութեան միջնորդական առաքելութեան ղեկավար Վլատիմիր Կազիմիրովը։*

*Նշուած համաձայնագրի իրագործման կոնկրետ թուա-*

(Շար.ը տեսնել էջ 4)

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
16 ՄԱՐՏ 1995

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

*Մանուկեան և Ցովսէփեան գերդաստանի ննջեցեալներուն քաղցր յիշատակին Տիկին Լիւսի Մանուկեան կը նուիրէ.*

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 150 |
| Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 150 |
| Գահիրէի Աղքատախնամին | 150 |
| Այծեմնիկ Հանգստեան Տան | 150 |
| Հայ Կարիքի Խաչին | 150 |
| «Արեւ»ին | 150 |
| «Յուսաբեր»ին | 150 |
| «Ջահակիր»ին | 50 |
| Ամենայն Սրբոց Գերեզմանատան | 50 |

*(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)*

*Իրենց սիրելի ազգականին՝ Ողբ. Մարի Օվանզիէյի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Տէր և Տիկին Արսէն Էմիրզեան կը նուիրեն.*

| | |
|---|---|
| «Այծեմնիկ» Հանգստեան Տան | 20 |
| «Ջահակիր»ին | 20 |

*Ողբ. Նուարդ Չէճէեանի (ԱՄՆ) մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Տէր և Տիկին Արսէն Էմիրզեան կը նուիրեն.*

| | |
|---|---|
| «Այծեմնիկ» Հանգստեան Տան | 20 |
| Հայկական Ընթերցասրահին | 20 |

*(Ստանալ «Ջահակիր»էն)*

## ԾՆՈՒՆԴ

*Ուրախութեամբ տեղեկացանք, որ անցեալ 11 Փետրուարին Համայնքիս ծանօթ երիտասարդներէն՝ Տէր և Տիկ. Արմէն և Ռիթա Ալեքսանեաններ բախտաւորուած են երկրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Արեւ։*

*Այս ուրախ առթիւ «Ջահակիր» կը շնորհաւորէ նորածին մանկան ծնողքը, մեծ ծնողները՝ Տէր և Տիկ. Վարդ և Նուէր Ալեքսանեաններն ու Տէր և Տիկ. Ասատուր և Իսկուհի Սագայեանները, մաղթելով արեւշատ եւ երջանիկ կեանք նորածին մանկան։*

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ ԳԱՀԻՐԷ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Հինգշաբթի 6, Ուրբաթ 7 եւ Շաբաթ 8 Ապրիլ 1995

**ՓԻՆԿ-ՓՈՆԿԻ**

**ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄԻՋԱԿՈՒՄԲԱՅԻՆ ՄՐՑԱՇԱՐՔ**

*Մանրամասնութիւնները մօտ ատենէն*

ՏՐԱՄԱԴՐԵԼԻ ԵՆ

ԱՒԱՆԴԱԿԱՆ ԹՕՓԻԿ, ԼԱՀՄԱՃՈՒՆ, ՔՈՒՊԷՊԱ, ՄԱՆԹԸ, ՏԵՐԵՒԻ ԼԻՑՔ ԵՒ ԳԱՆԵԼՈՆԻ

Բոլոր անոնք որոնք կը փափաքին ունենալ, թող հաճին դիմել սրահ ամէն երեկոյ ժամը 7—11 եւ կամ հեռաձայնել 3914908 թիւին:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՏՆՕՐԷՆԻ ՊԱՇՏՕՆ

Գահիրէի Գալուստեան Ազգային Վարժարանը կարիքը ունի նոր տնօրէնի մը, յառաջիկայ 1995-1996 կրթական տարեշրջանին համար։

Թեկնածուն ըստ օրէնքի պարտի եգիպտահպատակ ըլլալ։

Համալսարանաւարտ եւ ուսուցչական ասպարէզի մէջ ունենայ փորձառութիւն։

Դիմումնագրերը կ'ընդունուին Ազգային Առաջնորդարանի դիւանատան կողմէ։

ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ — ԳԱՀԻՐԷ

## ՀԱՅԱՍՏԱՆՆ ԱՌԱՋԻՆ ԱՆԳԱՄ ՄԱՍՆԱԿՑՈՒՄ Է ԳԱՀԻՐԷԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԻՆ

*(Շարունակութիւն Ա. էջէն)*

Հարկ է յիշեցնել, որ հայ-եգիպտական տնտեսական համագործակցութեանը զարգացման բնոյթ էր տրուել դեռ անցեալ տարի Նոյեմբերին Երեւանում եգիպտական առեւտրա-արդիւնաբերական խրախուսման կենտրոնի բացումով, որն եգիպտական առաջին նման հաստատութիւնն էր ԱՊՀ երկրներում: Այժմ նոր առիթ է ստեղծւում այդ կապերն էլ աւելի խորացնելու եւ զարգացնելու համար։

Յիշարժան է, որ ցուցահանդէսի առաջին օրերից մէկը յայտարարուելու է Հայաստանի օր։ Այդ օրը ցուցահանդէսային համալիրի ձայնասփիւռով կը հնչի հայկական երաժշտութիւն, մանրամասն կը ներկայացուի Հայաստանի ցուցադրանքը եւ լայն առումով նրա տնտեսութիւնը։

Պէտք է նշել նաեւ, որ վերջին տարիներին Հայաստանն արդէն մի քանի անգամ յաջողութեամբ քննութիւն է բռնել տարբեր միջազգային ցուցահանդէս-տօնավաճառներում, ինչը կարեւոր ցուցանիշ է համաշխարհային տնտեսութեան մէջ ինտեգրացուելու համար։

ԳԱՀԻՐԷՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԻՒՆ

## ԵԳԻՊՏԱՀԱՅ ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ ԺՈՂՈՎԸ

*(Շար. Բ. էջէն)*

*ութիւններ կրնայ յառաջացնել, առ այդ, կը խնդրէ պատկառելի Համագումար Ժողովէն ընտրել անձնափոխանորդ մը, որ զինք փոխարինէ որեւէ պատեհութեան պարագային։*

*Թեմական Համագումար Ժողովը միաձայնութեամբ համամտութիւն յայտնեց, Աղեքսանդրիոյ Պատ. Քաղաքական Ժողովի ատենապետ Պր. Վահան Ալեքսանեանի անձնափոխանորդութեան։*

*Օրակարգի հարցին քննարկումը աւարտած ըլլալով, Թեմական Համագումար Ժողովը փակուեցաւ ժամը 1ին, նախագահ Սրբազան Հօր պահպանիչ աղօթքով։*

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը:

Չէք ղրկել «M. BALAVAN»ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս:

ՀԱՅ ԹԵՐԹԸ ԸՆԿԵՐՆ Է ՀԱՅ ՏԱՆ

## ՏԽՐՈՒՆԻ

Տէր եւ Տիկ. Նշրայր եւ Վարդո Պէտօհանեան (Աղեքս.), Այրի Տիկին Վիքթորիա Թօփալեան եւ զաւակունք (Աղեքս.), Տէր եւ Տիկին Թոնի եւ Նելլի Մինասեան եւ զաւակը Քրիստափոր, Տիար Ալեքս Մինասեան (Գանատա), Տիար Արզար Մինասեան (Պրազի), Տէր եւ Տիկ. Էդուար Մինասեան եւ դուստրը (Ամերիկա), ինչպէս նաեւ Մինասեան, Թօփալեան (Յունաստան), Միգիչի (Գանատա), Մ. Թօփալեան (Աղեքս.), Պաղտեան, Պէտօհանեան (Գանատա), Կիւլէնեան (Գանատա), Վ. Պէտօհանեան (Աղեքս.) Պաղտեան (Գանատա) եւ համայն ազգակից պարագաները կը գուժեն մահը իրենց շատ սիրելի եղբօր, հօրեղբօր, մօրեղբօր, զարմիկին եւ ազգականին՝ Ողբ.

**ՅՈՎՍԷՓ ՄԻՆԱՍԵԱՆԻ**

որ տեղի ունեցաւ Չորեքշաբթի, 1 Մարտ 1995ին, Մոնթրէալ։

## ՏԽՐՈՒՆԻ

Տէր եւ Տիկ. Թոնի եւ Նելլի Մինասեան եւ զաւակը Քրիստափոր, Տէր եւ Տիկ. Կարօ եւ Նորա Թորոսեան եւ զաւակունք (Սիտնի), Տիկ. Սուլթանիկ Գալայճեան (Մոնթրէալ), Տէր եւ Տիկ. Վարդգէս եւ Աստղիկ Սարաճեան (Մոնթրէալ), Տէր եւ Տիկ. Ասփի եւ Պերճուհի Գալայճեան (Թորոնթօ), Այրի Տիկ. Ժենի Տէյիրմէնճեան (Կիպրոս), ինչպէս նաեւ Աստուրեան (Կիպրոս) Հոռոմեան (Կիպրոս), Ամասունի (Կիպրոս) եւ համայն ազգակից պարագաները կը գուժեն մահը իրենց շատ սիրելի մօրեղբօր, զարմիկին եւ ազգականին՝ Ողբ.

**ԱՌԱՔԵԼ ԳԱԼԱՅՃԵԱՆԻ**

որ հանգչեցաւ ի Տէր Կիրակի, 5 Մարտ 1995ին։

Յուղարկաւորութեան սգոյ արարողութիւնը տեղի ունեցաւ Շաբաթ, 11 Մարտ 1995ի կ.ե. ժամը 2.30ին Նիկոսիոյ Ազգային գերեզմանատան մէջ։

*Այս տխուր առթիւ խմբագրութիւնս իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր և Տիկ. Թոնի և Նելլի Մինասեաններուն և ազգակից բոլոր պարագաներուն։*

## ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԵԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

**ՀՐԱՒԷՐ**

Ամէն Հինգշաբթի, 16 Մարտէն սկսեալ,
Եկեղեցական արարողութենէն ետք, ժամը յ.մ. 6.30ին
ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ
«ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ»ԻՆ ՄԷՋ
Պիտի ցուցադրուին ժողովուրդին
ԱՍՏՈՒԱԾԱՇՆՉԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆԵՐՈՒ ՖԻԼՄԵՐ
Սիրալիր հրաւէր բոլորին

*Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ*

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Կիրակի, 2 եւ 9 Ապրիլ 1995

*Կը խնդրուի նկատի ունենալ եւ չխաչաձեւել*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| | Պարզ փոստ | օդային փոստ |
|---|---|---|
| Եգիպտոսի բաժանորդներէն | 6 Ե.Ո. | — |
| Արաբական երկիրներ | — | 5 տոլար |
| Եւրոպայի, Ամերիկայի, Գանատայի, Աւստրալիոյ եւ այլ երկիրներու բաժանորդներէն | 15 տոլար | 30 տոլար |



دار عروبة للطباعة — رقم ايداع دار الكتب ٨٠٥

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

جاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1311 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 27 ԱՊՐԻԼ 1995 ՀԱՏԸ ՀԻՆԳ ԵՒ ՔՍԱՆ ԵԳ. ԴՐԿ. عدد رقم ١٣١١ — الخميس ٢٧ ابريل ١٩٩٥


# ՅԱՒԵՐԺ ՓԱՌՔ ՄԵՐ ՆԱՀԱՏԱԿՆԵՐՈՒՆ



Ինչպէս ամէն տարի, այս տարի եւս 24 Ապրիլին, հարիւր հազարաւոր հայրենի ժողովուրդը իր յարգանքի ցոյցը կատարեց, 80 տարի առաջ թուրք պետութեան կողմէ գործադրուած Եղեռնի զոհերու յիշատակին՝ Ծիծեռնակաբերդին վրայ կանգնեցուած կոթողական յուշարձանին առջեւ։

Ժողովրդային զանգուածը երկար թափօրներով, առաւօտեան ժամը 10էն մինչեւ գիշեր, ծաղիկ զետեղեց այնտեղ եւ աղօթեց անմեղ նահատակներու հոգեհանգստեան համար, մինչ յաւերժացընող կրակը կը բոցավառէր:

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## Հատուցումի Ժամը Պիտի Հնչէ՛ Ուշ Կամ Կանուխ

Համայն հայութիւնը ամենուրէք կը նշէ 80-րդ տարելիցը այն մեծ անարդարութեան որ գործուեցաւ իրեն հանդէպ 1915ին եւ անոր յաջորդող տարիներուն։

Հայ ժողովուրդը ստացաւ մեծագոյն հարուածը, թուրք պետութեան կողմէ, որ կ'ուզէր բնաջնջել ամբողջ հայ ազգը գործադրելով ցեղասպանութիւն մը։

Սակայն ի հեճուկս աշխարհի երեսէն ջնջելու թալաաթեան յոխորտանքին, հայութիւնը կը մնայ կանգուն եւ անպարտելի: Չմեռաւ հայ ժողովուրդը։

Բայց կը մնայ անարդարութիւնը։

Թուրք պետութիւնը մինչեւ այսօր ալ ուժգնօրէն կը մերժէ ընդունիլ, թէ ծրագրած ու գործադրած է ցեղասպանութիւն, նաեւ՝ կը մերժէ իր բնական տիրոջ վերադարձնել իր գրաւած հողերը, որոնք ճանչցուած են Սեւրի Դաշնագիրով 1920ին։ Ութսուն տարիներ ետք, հայ ժողովուրդը կու գայ բարձրագոյն ու հաստատակամ ըսելու աշխարհին.— «Ոչ ոք մոռցուած է եւ ոչ մէկ բան մոռցուած: Ո՛չ, վէրքը չէ սպիացած տակաւին»:

Հատուցումի ժամը պիտի հնչէ ուշ կամ կանուխ։ Ինչ փոյթ, որ «մնայուն բարեկամութիւններ չկան այլ կան մնայուն շահեր»: Պէտք է մշակենք մեր պայքարի ապագայ փուլերը, համոզուած ըլլալով մեր դատի արդարութեան, անոր լուծման կարելիութեան եւ մանաւանդ համոզուած մեր ժողովուրդի դիմադրողական տոկունութեան, համբերելու կարողութեան եւ յաղթելու վճռակամութեան:

Հայ ժողովուրդը եղած է յամառ կառչելու իր հողին, եղած է յամառ պահելու եւ պահպանելու իր հաւատքն ու եկեղեցին, եղած է յամառ պահպանելու եւ զարգացնելու իր մայր լեզուն։ Այսօր եւս ըլլանք յամառ, աշխատելու համար մեր ազատ ու անկախ Հայաստանը դարձնելու բարգաւաճ հայրենիք մը։

Հայրենի մաքառող ժողովուրդին ինչպէս նաեւ նահատակ մեր հայրենակիցներուն համար ոչ արդարանալի է ոչ ալ ներելի արեւտական վէճերով բաժնել ազգային ճակատը ու կոտրել գոյամարտի թափը։

Հայաստանի հանրապետութիւնը այսօր, կը դիմագրաւէ բազմաթիւ դժուարութիւններ ներքին եւ արտաքին ճակատներու վրայ։ Ուստի

(Շարունակութիւնը տեսնել էջ 2)

## ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 80-ԱՄԵԱԿԻ ՈԳԵԿՈՉՈՒՄԸ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Մեծ Եղեռնի 80-ամեակին առթիւ հայրենիքի թէ սփիւռքի համայն հայութիւնը, զանազան ձեռնարկներով ոգեկոչեց անմոռանալի յիշատակը մեր բիւրաւոր նահատակներուն։ Եգիպտահայութիւնը եւս նշեց 80-ամեակը Գահիրէի թէ Աղեքսանդրիոյ մէջ, համազգային շուքով։

Հետեւաբար Գահիրէի մէջ առաջին ձեռնարկը սկսաւ Համազգային Յուշատօնով մը, Ուրբաթ 21 Ապրիլի երեկոյեան, Հելիոպոլսոյ Նուպարեան Ազգ. վարժարանի «Պըլըքտանեան» հանդիսասրահին մէջ, հովանաւորութեամբ եգիպտահայ հոգեւոր պետերուն, նախաձեռնութեամբ Գահիրէի Ազգային Իշխանութեան եւ մասնակցութեամբ մշակութային, մարզական եւ բարեսիրական կազմակերպութիւններուն։ Տեղի ունեցաւ գեղարուեստական յայտագիր։ Ապա օրուան պատգամը փոխանցեց վաստակաւոր բանաստեղծ Ժագ Յակոբեան։

Կիրակի 23 Ապրիլի առաւօտեան Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր տաճարին մէջ տեղի ունեցաւ հանդիսաւոր Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն մեր նահատակներու հոգւոյն: Ս. Պատարագը մատուցանեց եւ այս յաւուր պատշաճի քարոզ ու խօսեցաւ Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, Ս. Պատարագէն ետք հոգեհանգստեան արարողութիւնը կատարուեցաւ եկեղեցւոյ Մեծ Եղեռնի Յիշատակարան մատուռին մէջ, ...

(Շար. տես էջ 2)

## ՏԱՂԱՆԴԱՒՈՐ ԲԱՆԱՍՏԵՂԾ ԺԱԳ ՅԱԿՈԲԵԱՆԻ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆԸ

Չորեքշաբթի 19 Ապրիլի գիշերը, ականաւոր բանաստեղծ Ժագ Յակոբեան, ընկերակցութեամբ իր կրտսեր եղբօր՝ երաժշտագէտ Մօ. Եդուարդ Յակոբեանի, հիւրը եղաւ «Ջահակիր»ի շրջանակին։

Ինչպէս նախապէս տեղեկացուցած էինք, յարգելի հիւրը Եգիպտոս հրաւիրուած էր Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ Ազգ. Իշխանութեանց կողմէ, Ապրիլեան Եղեռնի 80-ամեակի՝ Համազգային Յուշատօներուն իր պատգամը տալու եգիպտահայութեան։

Հաճելի եւ մտերմիկ զրոյց մը ունեցանք սիրելի հիւրին հետ, որուն ներկայ էին «Ջահակիր»ի եւ Հայկ. Ընթերցասրահի պատասխանատու անդամներ,

Ան մօտէն հետաքրքրուեցաւ թերթիս խմբագրական եւ հրատարակչական գործունէութեանց մասին, ապա խօսակցութիւնը կեդրոնացաւ սփիւռքահայութեան կացութեան շուրջ։ Ժ. Յակոբեան սրտաբացօրէն պատասխանեց իրեն ուղղուած բոլոր հարցումներուն։ Ապա կարօտով անդրադարձաւ անցեալի յուշերուն, Եգիպտոսի մէջ, ուր օրրանը եղած էր իր երիտասարդ հասակին, ասկէ շուրջ 40 տարիներ առաջ։

Շահեկան խօսակցութիւնը կը շարունակուէր, մինչ ջերմ մթնոլորտի մէջ տեղի կ'ունենար մտերմիկ թէյասեղանի հիւրասիրութիւն մը։

Ժամանակը յառաջացած ըլլալով, հաճոյախօս բանաստեղծ Ժագ Յակոբեան հրաժեշտ առաւ ու մեկնեցաւ ուշ գիշերին։

(Ընդունելութիւն ի պատիւ Ժ. Յակոբեանին, «Յուսաբեր»ի մէջ՝ կարդալ էջ 2)

## ԹՈՒՐՔԻԱ ԲԱՑԱՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՌՋԵՒ ՕԴԱՅԻՆ ՄԻՋԱՆՑՔԸ

«ՄԱՐՄԱՐԱ».— Տեղեկացանք որ անցեալ Հինգշաբթի օր Թուրքիա բացաւ դէպի Հայաստան օդային միջանցքը, որ 1993 Ապրիլէն փակած էր ինքնաթիռներու երթեւեկութեան օդային գիծը: Այս որոշումը առնուած է երբ երկու երկիրներու քաղաքային օդանաւորդութեան պատասխանատուներ Անգարայի մէջ հանդիպում մը ունեցած են:

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
27 ԱՊՐԻԼ 1995

# ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Գահիրէի Քաղաքական Ժողովը, գործադրելով «Վ. Զագըճեան» հայերէն և հայագիտական նիւթերու ուսուցչաց ֆոնտին յատուկ կանոնագրութեան տրամադրութիւնները, որոշած է 1995 Հոկտեմբեր-Դեկտեմբեր եռամսեայ շրջանին համար, Գալուստեան, Նուպարեան և Պօղոսեան վարժարաններէն ներս այս նիւթերը դասաւանդող ուսուցիչ ուսուցչուհիներուն եգ. ոսկի 3020,67 դհկ. քաջալերական յատկացում կատարել 3 Ապրիլ 1995-էն սկսեալ, Գահիրէի և Աղեքսանդրիոյ Առաջնորդարաններուն միջոցաւ։

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

### «ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆ»ԻՆ

(Բ. ՑԱՆԿ)

Սրահիս Հ.Մ.Մ.ի կազմակերպած «Նուպար Պալաեան» Դ. չալենճ բաժակի եւ կրտսերներու փինկ-փոնկի համահայկական մրցաշարքներուն յաջողութեան առիթով կը նուիրեն.

| | |
|---|---|
| Պր. Էտուար Մելիքեան | 150 |
| Տոքթ. և Տիկին Նորայր Սիմոնեան | 100 |
| Տէր և Տիկին Օննիկ Ալեքսանեան | 100 |
| » » Հայկ Իրատեան | 100 |
| » » Կարպիս Եազըճեան | 100 |
| » » Դանիէլ Ծաճաեան | 100 |
| » » Էտուար Զարդարեան | 100 |
| » » Հրաչ Միքայէլեան | 100 |
| » » Նորայր Տէօվլէթեան | 100 |
| » » Ցրէտի Գարակէօզեան | 100 |
| » » Պերճ Թուլումպաճեան | 100 |
| » » Հրաչ Սվաճիպաշեան | 100 |
| » » Խորէն Գալըճեան | 100 |
| » » Շահէն Մազլումեան | 100 |
| Պետրոս և Աւետիս Մովսէսեան եղբարք | 100 |
| Ռուպէն, Արամ և Յակոբ Արթինեան եղբարք | 100 |
| Տէր և Տիկին Եդուարդ Աւագեան | 50 |
| » » Գէորգ Էքսէրճեան | 50 |
| » » Յակոբ Մարգարեան | 50 |
| » » Արա Տեփոյեան | 50 |
| » » Անդրօ Վարժապետեան | 50 |
| » » Հայկ Նազաշեան | 50 |
| » » Յակոբ Զրաքեան | 50 |
| » » Սարգիս Խաչելեան | 50 |
| Լուսին և Արա Կէրիկեաններ (Մոնթրէալ) | 50 |
| Պր. Սիմոն Զամքէրթենեան | 50 |
| Պր. Յակոբ Պասմաճեան | 50 |

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Ապրիլ 24-ին նահատակաց տօնին առթիւ, ի յիշատակ իր գերդաստանին և ազգիս զոհերուն Տիկին Աշխէն Թաժոյեան Իշխանեան կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 400 |
| Այեծմնիկ Հանգստեան Տան | 400 |
| «Արեւ»ին | 20 |
| «Յուսաբեր»ին | 20 |
| «Ջահակիր»ին | 20 |

(Ստանալ «Արեւ»էն)

Տիար Նուպար Կէրիկեան եւ զաւակները՝ Տէր և Տիկ. Էդգար եւ Լուսին Հապէպ, Տէր եւ Տիկ. Արա եւ Սանտրա Կէրիկեան եւ Տիար Համբարձում Եէնիգոմշեան (ԱՄՆ) իրենց սիրեցեալ կողակցին մօր և քրոջ՝ Ողբ. Վիքթօրիա Կէրիկեանի մահուան 9-րդ տարելիցին առթիւ և անոր քաղցր ու անմոռանալի յիշատակին կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկական Ընթերցասրահին | 50 |
| «Ջահակիր»ին | 50 |
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 30 |
| Գահիրէի Աղքատախնամին | 30 |
| «Արեւ»ին | 20 |
| «Յուսաբեր»ին | 20 |

(Ստանալ «Ջահակիր»էն)

Իրենց սիրելի մօրաքրոջ Ողբ. Մանուշ Նիկոլեանի մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան Տէր և Տիկին Կալապետ և Շաքէ Թումայեանց և զաւակունք կը նուիրեն.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 10 |
| «Ջահակիր»ին | 10 |

### ՓՕԼ ՔԻԼԻՃԵԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՖՈՆՏԻՆ

Ողբ. Մանուշակ Նիկոլեանի մահուան տխուր առթիւ վասն ցաւակցութեան կը նուիրեն.

| | |
|---|---|
| Տիար Արտաշ Վարդուկեան | 25 |
| Տիկին Սիրարփի Քիլիտճեան | 25 |
| Տիկին Մարսէլ Վարդուկեան | 20 |
| Տիկին Սիրվարդ Վարդուկեան | 20 |

### ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Շնորհակալութեամբ ստացանք.- Պր. ՀԱՅԿ-ԱՐԱՄ ԳԱԼԻՆՃԵԱՆէ (Պէյրութ) փոխան բաժանորդագրութեան՝ 25 ամերիկեան տոլար։

### ՍՏԱՑԱՆՔ

Շնորհակալութեամբ ստացանք «ԱՐԱԲԿԵՐՑԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ» գրքոյկը, գրուած Պր. Նուպար Տէր Միքայէլեանի կողմէ։ Տպագրութիւն՝ Էջմիածին, 1995։ Ձօնուած լր վաղեմի դասընկերոջ՝ Նորոգ ողբացեալ Սարգիս Պալաեանի, ինչպէս նաեւ անոր արաբկերցի ծնողներուն՝ Մարտիրոս և Սաթենիկ նաեւ վաղամեռիկ եղբօր՝ Նուպար Պալաեաններու անթառամ յիշատակներուն։

Գիրքը ամբողջութեամբ նուիրուած է Հին ու Նոր Արաբկիրի եւ արաբկերցիներուն, որոնց մասին յօդուածներ գրուած են հեղինակին կողմէ 1970էն 1994 տարիներու ընթացքին, զանազան սփիւռքահայ մամուլներու մէջ։ Հեղինակը հաղորդած է նաեւ արաբկերցի գիտականներու մասին հերաքրքրական տեղեկութիւններ։

ԿԱՐԴԱՑԷՔ ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷՔ
ՀՆՉԱԿԵԱՆ ՄԱՄՈՒԼԸ

## ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍ

Կատարմամբ

ԱՄԱՏԷՈՒՍ ՍԵՆԵԿԱՅԻՆ ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲԻՆ

Մենակատար՝ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ (ԴԱՇՆԱԿ)

Նուագավար՝ ԵՈՒՍԷՖ ԷԼ ՍԻՍԻ

Կիրակի, 30 Ապրիլ 1995, երեկոյեան ժամը 8.00ին

ԳԱՀԻՐԷԻ ՕՓԵՐԱՅԻ ՓՈՔՐ ԴԱՀԼԻՃԻՆ ՄԷՋ

ՅԱՅՏԱԳԻՐ՝

Ի. Ս. Պախ - Քոնչերթօ ռէ մինոր դաշնակի եւ լարային նուագախումբի համար, ինչպէս նաեւ նուագախումբի ստեղծագործութիւններ՝ Կրանասոսէն, Սարազաթէն, Պոքերինիէն

Մուտքը՝ 10 ե.ո. ուսանողներուն համար՝ 2 ե.ո.

## Ի ՄԱՅՐ ԱԹՈՌ Ս. ԷՋՄԻԱԾԻՆ ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ ԿԱԹՈՂԻԿՈՍԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆ

### ՎԻՏԷՈՅԻ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ

ԳՈՒՆԱՒՈՐ ԵՒ ԵՐԿՈՒ ԺԱՄ ՏԵՒՈՂՈՒԹԵԱՄԲ

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

ԳԱՀԻՐԷԻ ԵԿԵՂԵՑԵՍՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԵԱՆ

Ուրբաթ 5 Մայիս 1995-ի գիշերը ժամը ճիշդ 8.45-ին

ՀԵԼԻՈՊՈԼՍՈՅ ՊԸԼԸՔՃԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՏԵՂԵԿՈՒԹԻՒՆՆԵՐ ՊԻՏԻ ՏԱՆ ԵԳԻՊՏԱՀԱՅ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐ

ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ

ԱՌԱՋՆՈՐԴ ԵԳԻՊՏԱՀԱՅՈՑ

ԵՒ

ՏԻԱՐ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆ

ԱՏԵՆԱՊԵՏ ԳԱՀԻՐԷԻ ՊԱՏԿ. ԹԵՄԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ

Սիրալիր Հրաւէր

## ՀԱՅ ԿԱԹ. ՄԻՈՒԹԵԱՆ ՄՈՆԹՐԷԱԼԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ

Սիրով կը հրաւիրէ ձեզ ներկայ գտնուելու, մեծարման երեկոյին

ԴԱՒԻԹ Յ. ԼՎԵՐԵԿԼԵԱՆԻ

ՅԻՍՆԱՄԵԱՅ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ

ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԵԱՆ

Որ տեղի պիտի ունենայ

Կիրակի 21 Մայիս 1995 — երեկոյեան ժամը 6 ին

Հ.Կ. ԻՓԷԿԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԱՐՀԻ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊՍ. ԴԵՐՁԱԿԵԱՆԻ

(Առաջնորդ Հիւսիսային Ամերիկայի Կաթողիկէ Հայոց)

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐ. ՏԷՐ ԳԷՈՐԳ ՎՐԴ. ՋԱՊԱՐԵԱՆԻ

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

Կիրակի, 21 Մայիս 1995, կէսօրուան ժամը 12-ին

ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ



### ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅՈՑ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆ
ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ
ՄԱՐԿՐԻԹ-ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆ

ԵՐԳՉՈՒՀԻ
ՀԱՆՐԻԷԹ
ԿԱՐԱՊԵՏԵԱՆ-ՎԻԿԿԷՐ
HENRIETTE
GARABEDIAN - WIGGER
SINGER
(1918-1992)

ԵԴՈՒԱՐԴ ՅԱԿՈԲԵԱՆ
EDWARD HAGOPIAN

ՏՊԱԳՐԱՏՈՒՆ «ՆՈՒՊԱՐ»
Nubar Printing House
Cairo - Egypt

Ստանալու համար դիմել.- ԱՆՎՃԱՐ

ԳԱՀԻՐԷ՝ Ազգային Առաջնորդարան, Օր. Աստղիկ Պուտագեանէն
ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ՝ Ազգային Առաջնորդարան, Պր. Սարգիս Դարմանեանէն

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
11 ՄԱՅԻՍ 1995

# ԱՊՐԻԼԵԱՆ ԵՂԵՌՆԻ 80-ԱՄԵԱԿԻ ՅՈՒՇԱՏՕՆԸ

(Շարունակութիւնը Գ. էջէն)

հանի՝ «Կանք ու պիտի մնանք» բանաստեղծութիւնը։ Խրախուսիչ էր Օր. Լէյլա Խաչիկի ինքնագիր ֆրանսերէն՝ «Երգ Հայաստանի» ոտանաւորը, որ ասմունքեց խոր ըմռնումով։ Ապա Պր. Աւետիս Մովսէսեան զգացումով եւ ինքնուրոյն ոճով ասմունքեց Պարոյր Սեւակի՝ «Եռաձայն Պատարագ»էն հատուածներ։

Օրուան պատգամախօս բանաստեղծ Ժագ Յակոբեան խօսած պահուն։

Մեներգով հանդէս եկաւ համայնքիս ծանօթ արուեստագէտ Գրիգոր Փարթամեան, որ իր քաղցր եւ յուզիչ ձայնով մեներգեց միայն «Նահատակաց Յիշատակին» երգը, դաշնակի ընկերակցութեամբ կարող դաշնակահարուհի Արփի Ճանիկեանի։ (Փափաքելի էր որ համայնքիս միւս արուեստագէտներն եւս իրենց մասնակցութիւնը բերէին սոյն նուիրական ձեռնարկին)։

Օրուան խորհուրդին մասին պատգամելու հրաւիրուած էր Լոս Անճելըսէն, անուանի բանաստեղծ Ժագ Յակոբեան։ Պր. Հրաչ Սիմոնեանի հրաւէրով բեմ բարձրացաւ յարգելի բանախօսը։ Իրապէս իմաստալից եւ շահեկան ելոյթ մըն էր որ ունեցաւ վաստակաւոր մտաւորականը։ Բանաստեղծական իր ելոյթին մէջ, Ժ. Յակոբեան կարողացաւ հաղորդել հայոց Եղեռնի եղելութիւնը։ Ան խռովայոյզ սակայն կեդրոնացուց իր խօսքին մէջ, շեշտը դրաւ նահատակներու հոգիներու յաւերժականութեան վրայ։ Որքան տպաւորիչ էր Տէր Զօրի վկաներու յիշատակին նուիրուած՝ «Որ կը քալեն...» հայրենաշունչ քերթուածը։ Ժ. Յակոբեանի ելոյթը ջերմ ծափահարութիւններու արժանացաւ հանդիսականներուն կողմէ։

Յայտագրի վերջաւորութեան՝ խմբային ասմունքով ելոյթ ունեցան Օրք. Թալին Կապէեան, Նորա Գոլոյեան եւ Արաքսի Դելիփեան արտասանելով Ժ. Յակոբեանի գլուխ-գործոցներէն՝ «Յաղթերգութիւն» ոգեշունչ բանաստեղծութիւնը։ Արդարեւ մէկը միւսին կը գերազանցէին՝ շեշտի, ըմռնումի եւ զգացումի տեսակէտէն, որոնք մեծապէս գնահատուեցան ներկայ հասարակութենէն։

Յուշատօնը փակուեցաւ թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի եւ Հայ Կաթողիկէ համայնքի վիճակաւոր Գերպ. Տ. Պետրոս Եպս. Թարմունիի արտասանուած պահպանիչով։

Մ. Պ.

# ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ՄԱՏՐԱՍ

(Շարունակութիւն Բ. էջէն)

*Մարտի 2ի առաւօտեան ուխտաւորներն ու Պատուէրակ Ս. Հայրը ողջմամբ ժամանեցին Սիտնի. մեծագոյն տպաւորութիւններով բեռնաւորուած ու հոգեկան ապրումներով ոգեշնչուած։*

*Պատուէրակ Ս. Հայրը Կալկաթա կեցութեան օրերուն առիթը ունեցաւ զբաղուելու գաղութային հարցերով. ժողովներ գումարեց եկեղեցւոյ ու դպրոցներու վարչական կազմերու հետ, հանդիպում ունեցաւ ուսուցչական կազմին հետ, ինչպէս նաեւ հանդիպեցաւ աշակերտներուն և աշակերտուհիներուն տալով անոնց անհրաժեշտ թելադրութիւններ։*

*Պատմական արժէք ու նշանակութիւն ունեցող երկու տօնախմբութիւններ ԱԶԴԱՐԱՐ 200 ամեակ ու Չինսուրայի Եկեղեցւոյ 300 ամեակ կը մնան կոթողական յուշարձաններ հեռաւոր Հնդկաստանի տարածքին վրայ, որպէս վկաներ գաղութի հարուստ անցեալի ու համահայկական բնոյթի ծրագիրներու։*

*Յարգանք ու պատիւ պատմութիւն կերտողներուն։*

ԹՂԹԱԿԻՑ

Սիտնի, Աւստրալիա

## «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

*Ողբ. Մարի Օհանովիչի մահուան քառասունքին առթիւ կը նուիրեն.*
*Տէր եւ Տիկին*
*Մարտիկ Պալաեան* 20

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

*Իր սիրելի Թոռնիկին՝ Վիքիի ծննդեան ուրախ առթիւ վասն խնդակցութեան, ընկեր Նուպար Կէրիկեան կը նուիրէ.*
*Հայկական Ընթերցասրահին* 25
*«Ջահակիր»ին* 25

## ՍՏԱՑԱՆՔ

*Շնորհակալութեամբ ստացանք «ՓԱՌՔ ՔԵԶ, ՏԷՐ..» գրքոյկը։ Շուրջ 40 էջնոց սոյն ժողովածուն գործն է երաժշտագէտ Մօ. Եդուարդ Յակոբեանի, զոր լոյս տեսած է ի յիշատակ Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարի «Շնորհալի» երգեցիկ խումբի և «Եգիպտահայ երգչախումբ»ի մեներգչուհի՝ Մարկրիթ-Պայծառ Յակոբեանի մահուան չորրորդ տարելիցին առթիւ։ Գիրքին մէջ Ե. Յակոբեան լայն ծանօթութիւններ տուած է «Փառք քեզ, Տէր» մաղթանքի մասին, ապա արձանագրած՝ իր պատրաստած, մաղթանքի ձայնագրումը։ Ժողովածուին մէջ նաեւ կը կարդանք յաւէտ ողբացեալին կենսագրութիւնը, ինչպէս նաեւ անուանի բանաստեղծ Ժագ Յակոբեանի քանի մը ընտիր քերթուածներէն։*

*Հրատարակութիւն Գահիրէի Հայոց Առաջնորդարանի՝ «Մատենադարան Մարկրիթ-Պայծառ Յակոբեանի»ի։ Տպագրութիւն՝ Տեարք Նուպար և Հրաչ Սիմոնեան եղբայրներու։*

■

*Շնորհակալութեամբ ստացանք Լիբանանէն, «ԿԱՆՉ» շաբաթաթերթի (նախկին «Ազգային Մշակոյթ») Ապրիլեան Եղեռնի 80-ամեակի առիթով լոյս տեսած բացառիկ թիւը։ 100 էջնոց սոյն բովանդակալից թիւը կը պարփակէ հայ և արաբ մտաւորականներու և քաղաքագէտներու տեսակէտները, Հայոց ցեղասպանութեան մասին։*

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը։

Չէք ղրկել «M. BALAYAN»ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս։

ԿԱՐԴԱՑԷՔ ԵՒ ՏԱՐԱԾԵՑԷՔ
ՀՆՉԱԿԵԱՆ ՄԱՄՈՒԼԸ

## Ծ Ն Ո Ւ Ն Դ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Տէր եւ Տիկին Էզզաթ եւ Լուսին (ծնեալ Կէրիկեան) Հապիպ, 2 Մայիսին Մոնթրէալի մէջ, բախտաւորուած են երկրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Վիքի։

Այս ուրախ առթիւ «Ջահակիր» կը շնորհաւորէ նորածինին ծնողքը, մեծ մայրը՝ Տիկ. Սիրուն Հապիպը եւ մեծ հայրը՝ ընկեր Նուպար Կէրիկեանը, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները, մաղթելով նորածին մանկան երջանիկ եւ երկար կեանք։

ՀԱՅ ԿԱԹ. ՄԻՈՒԹԵԱՆ ՄՈՆԹՐԷԱԼԻ ՎԱՐՉՈՒԹԻՒՆԸ
Սիրով կը հրաւիրէ ձեզ ներկայ գտնուելու, մշակութային գործիչ

**ԴԱՒԻԹ Յ. ԷՎԵՐԵԿԼԵԱՆԻ**

ՅԻՍՆԱՄԵԱՅ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ ՆՈՒԻՐՈՒԱԾ
ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԻՍՈՒԹԵԱՆ
Որ տեղի պիտի ունենայ
Կիրակի 21 Մայիս 1995 — երեկոյեան ժամը 6 ին
Հ.Կ. ԻՓԷԿԵԱՆ ՍՐԱՀԻՆ ՄԷՋ
ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

**ԱՐՀԻ. ՏԷՐ ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊՍ. ԴԵՐՁԱԿԵԱՆԻ**

(Առաջնորդ Հիւսիսային Ամերիկայի Կաթողիկէ Հայոց)
ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

**ԳԵՐ. ՏԷՐ ԳԷՈՐԳ ՎՐԴ. ՋԱՊԱՐԵԱՆԻ**

## ՆՈՒՊԱՐԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

*Շնորհակալութեամբ ստացած ենք երկու համակարգիչ (գոմփիւթըր) որոնց փոխարժէքն է 2500 ամերիկեան տոլար, նուիրուած Տէր և Տիկին Վահագն Յովհաննէսեաններու (ԱՄՆ) կողմէ, վարժարանս այցելութեան առթիւ։*

*ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ*

## ՄԵՐՃԱՆԵԱՆ ԱԶԳ. ՄԱՆԿԱՊԱՐՏԷԶ

Կիրակի, 21 Մայիս 1995, կէսօրուան ժամը 12-ին

**ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ**

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ
ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ ՍՐԲ. ԱՐՔԵՊՍ. ՉԻՆՉԻՆԵԱՆ
Առաջնորդ Հայոց Եգիպտոսի
ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ
ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՐՈՒԺԱՆ ԳՈՋՈՒՆԵԱՆԻ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՐԱՆ ԳԱՀԻՐԷ

Շաբաթ 14 Հոկտեմբեր 1995

**ՏԱՐԵԿԱՆ ՁԵՌՆԱՐԿ**

*Կը խնդրուի նկատի ունենալ*

ՏՐԱՄԱԴՐԵԼԻ ԵՆ
ԱՒԱՆԴԱԿԱՆ ԹՕՓԻԿ, ԼԱՀՄԱՃԻՒՆ,
ՔՈՒՊԷՊԱ, ՄԱՆԹԸ, ՏԵՐԵՒԻ ԼԻՑՔ ԵՒ ԳԱՆԵԼՈՆԻ

Բոլոր անոնք որոնք կը փափաքին ունենալ, թող հաճին դիմել սրահ ամէն երեկոյ ժամը 7—11 եւ կամ հեռաձայնել 3914908 թիւին։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

Հիմնուած 1948

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالابان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1314 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 22 ՅՈՒՆԻՍ 1995 ՀԱՏԸ 25 Եգ. Դհկ. ١٩٩٥ ٢٢ يونيه الخميس - ١٣١٤ عدد رقم


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ

## ՇԱՐՈՒՆԱԿԵՆՔ ՔՍԱՆ ՈՒԽՏԵԱԼՆԵՐՈՒ ՃԱՆԱՊԱՐՀԸ

1915 Յունիս 15, Հայ ազատագրական պայքարի սխուր թուական։ Թուական մը որ 80 տարիէ ի վեր կը ոգեկոչենք, Քսան անմահներու յիշատակը, որոնք թուրք կառավարութեան զինուորական դատարանի վճիռով կախաղան բարձրացան Պոլսոյ Սուլթան Պայազիտի հրապարակին վրայ, առանց ընկըրկումի, ինչպէս մէ՛կ հաւատքի եւ մէ՛կ գաղափարի ուխտեալներ։

80 տարիներ անցած են այսօր, այն չարաշուք օրէն, երբ ազատութեան համար իրենց կեանքը նուիրած Քսան Հնչակեան հայեր դիմաւորեցին մահը՝ «կեցցէ՛ Հայաստան» գոչելով։

Քսան հերոսները իրենց համար սահմանուած առաքելութիւնը՝ ինչպէս պարտքի ծանր լուծ, տարին մինչեւ մահ, օրինակ հանդիսանալով յաջորդող բոլոր սերունդներուն։

Մեծ Եղեռնի նախորդող տարիներուն Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան ղեկավարութիւնը կանխագուշակելով հայութեան սպառնացող վտանգը կոչ ուղղեց հայութեան ընդհանրապէս, ու հայ կուսակցութեանց ու խմբաւորումներուն մասնաւորապէս, չհաւատալ Երիտ-Թուրքի խոստումին, չխաբուիլ անկէ, ըլլալ աչալուրջ, պատրաստուիլ միասին, հաւաքական ուժերով դիմակալելու գալիք վտանգը։ Արդարեւ ռումանական Քէօսթէնճէ (Քոսթանցա) քաղաքին մէջ գումարուեցաւ Հնչակեան Կուսակցութեան 7-րդ համագումարը, 1913ին. հոն որոշուեցաւ Քսանները հրապարակ իջեցնել, կարենալ առաջքը առնելու հայկական կոտորածներուն...։

Կուսակցութիւնը թշնամիին դէմ պիտի կազմէր միացեալ ճակատ, պայքարիլ անոնց դէմ համազգային միութեամբ, ամէն բանէ վեր դասելով ազգին ու հայրենիքին շահերը։

Այդ օրերուն չլսուեցաւ Հնչակեան Կուսակցութեան կոչը. աւելին՝ դատապարտուեցանք, անոնց կողմէ որոնք հաւատացին Թուրքերու սախօսութեանց։ Դաժան էր ճամբան Քէօսթէնճէէն Պայազիտ, սակայն Քսանները քալեցին այդ միջոցը անձնուրաց եւ անշահախնդիր ոգիով, ղեկավարութեամբ անմահանուն Փարամազի։

Թէեւ մինակ չէր Հնչակեանը, ան՝ իր հետ ունէր Իթթիլաֆի ընդդիմադիր շէֆերը, որոնց հետ միասնաբար ծրագրեցին տէրորի շարժումը։ Պէտք էր զերծին տապալել այն անձերը, ինչպէս էնուէր, Թալաաթ կամ Ճէմալ, որոնց ափերուն մէջ ամփոփուած էին ոճիրներու գործադրման հրահանգները։ Սակայն զազանի ոստիկանութիւնը կարողացած էր ձեռք անցընել հայ յեղափոխականներու անուանացանկերը, շնորհիւ Եաւսեան անունով լրտեսի մը, որը դիւրացուց «ա՞ֆս»ին մասնակից անձերը բանտարկելու գործը։

Հնչակեան Քսանները ամբողջութեամբ կը պատկանէին հայ ժողովուրդին, որովհետեւ անոնք իրենց կեանքը զոհեցին հայ ժողովուրդի ազատագրութեան համար։

Անգամ մը եւս հաղորդուինք ու ներշնչուինք հայ ժողովուրդի բոլոր արդար իրաւունքներուն ստացման եւ պաշտպանութեան համար զոհուած վկաներուն մաքուր գաղափարականովը։ Եւ այդ հաւատքով շարունակենք մեր ճանապարհը, հաւատալով որ վաղը հայութիւնը ամբողջ, ի Մայր Հայաստան եւ ի Սփիւռս աշխարհի իր արժանի յարգանքը պիտի մատուցանէ անոնց, որոնք կախաղան բարձրացան, նահատակուեցան, որպէսզի հայ ապրի՛։

Միասնական ոյժ եւ իրապաշտ քաղաքականութիւն ու գործելաձեւ։ Ահա ա՛յս է այսօրուայ հրամայականը։ Այս էր անցեալին ու այս պիտի ըլլայ ապագային։

Փա՛ռք Քսաններու անթառամ յիշատակին։

ԳԱՀԻՐԷ

## Քսան Անմահներու Յիշատակի 80-ամեակի Ոգեկոչումը

Անցեալ Կիրակի 18 Յունիս 1995ի առաւօտեան Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր տաճարին մէջ, Նախագահութեամբ Թեմիս բարեխնամ առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեանի, ի յուշ 1915 Յունիս 15ին, Պոլսոյ Պայազիտ հրապարակին վրայ կախաղան բարձրացուած Քսան Հնչակեան Նահատակներու 80րդ տարելիցին, մատուցուեցաւ Ս. Պատարագ և տեղի ունեցաւ Հոգեհանգիստ, ի ներկայութեան գաղափարի ընկեր-ընկերուհիներու և համակիրներու։

Օրուան պատարագիչն էր Արժ. Տ. Գալուստ Քհնյ. Դարբինեան։ Այս առթիւ առաջնորդ Սրբազան Հայրը խօսեցաւ յաւուր պատշաճի քարոզ մը և արժանին մատուցանեց Քսան հերոսներուն։

Հոգեհանգստեան արարողութենէն ետք, Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ հաւաքուեցան ներկաները, ուր Սրբազան Հայրը կրկին վերակոչեց յիշատակը Քսաններուն, ապա խօսքը տուաւ Հայկական

(Շար. տես էջ 2)




### ՔՍԱՆ ՀՆՋԱԿԵԱՆ ՎԿԱՆԵՐՈՒՆ

Ինչպէ՛ս անցուեց մրսեցաւ, ո՛հ մրսեցաւ ձեր հոգին՝
Երբ Յունիսի այն առտուն, արշալոյսէն դեռ առաջ,
Իրարու քով, իրարու միայն կառչած նայուածքին,
Մահափայտերը տեսաք, ձեր դէմ ցցուած իբրեւ խաչ...

Ինչպէ՛ս անցուեց խորհեցաք, թէ ա՛լ արեւը երբե՛ք,
Նոյն օրն ու օր մը նորէն, պիտի երբեք չը ծագի
Ձեզի համար, եւ ինչպէ՛ս այդ զգացմամբ սրտաբեկ՝
Դուք նայեցաք հեռմըկող անհունութեանն երկնքի։

Ի՛նչպէս անցաւ մի առ մի ձեր աչքերուն առջեւէն
Սիրուած դէմքերը բոլոր՝ հայրենիքին հետ սիրուած,
Ե՛ւ հին յուշերը անուշ, ե՛ւ նոր յոյսերը ամէն...

Բայց եւ ի՛նչպէս ամէնքդ ալ, վերջին պահուն ձեր դիմաց
Երազային, շատ պայծառ արփի արեւ մը տեսաք,
Եւ ճօճեցաք օդին մէջ՝ զայն խմելէ վերջ ցրյաց...

ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ

## Մասնագէտներու Հերթական Խումբը Գահիրէի Մէջ

Օրերս Երեւանից Գահիրէ են ժամանել տարբեր բնագաւառների 20 մասնագէտներ, այդ թւում ՀՀ կառավարութեան աշխատակազմի, արտաքին գործերի, ներքին գործերի, պաշտպանութեան, էկոնոմիկայի եւ գիւղատնտեսութեան նախարարութիւնների աշխատակիցներ։ Նրանք կը մասնակցեն Եգիպտոսի ԱԳՆ կազմակերպած յատուկ դասընթացներին, որոնք վերաբերում են դիւանագիտութեան, սեփականաշնորհման, անվտանգութեան և գիւղատնտեսութեան ոլորտներին։ Հայ մասնագէտները կը ծանօթանան համապատասխան բնագաւառներում Եգիպտոսի հարուստ փորձին եւ վերջին տարիների նշանակալից ձեռքբերումներին։ Դասախօսութիւնները կարդալու են հիւրընկալող երկրի լաւագոյն մասնագէտները։ Եգիպտական կողմն իր վրայ վերցրել ճանապարհի եւ կեցութեան բոլոր ծախսերը։

Նշանակալի է, որ մօտաւորապէս մէկ ու կէս տարուայ ընթացքում Հայաստանի տարբեր պետական գերատեսչութիւնների եւ ձեռնարկութիւնների 80 աշխատակիցներ վերապատրաստութիւն են անցել Եգիպտոսում։

Այս անգամ պարապմունքները տարբեր խմբերում տեւելու են 3-6 շաբաթ, որին յաջորդող ամառնային արձակուրդներից յետոյ Եգիպտոսի ԱԳՆ ծրագրում է անցկացնել նման դասընթացների մի նոր ընդգրկուն փուլ։

# ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

20 ՅՈՒԼԻՍ 1995


## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Տէր և Տիկին Արա և Սանտրա Կէրիկեաններ, 16 Յունիս 1995ին, Մոնթրէալի մէջ բախտաւորուած են աղջիկ մանչ զաւակով մը, զոր անուանակոչած են Տանիէլ:

Այս ուրախ առթիւ «Ջահակիր» կը շնորհաւորէ նորածինին ծնողքը, մեծ հայրը՝ ընկ. Նուպար Կէրիկեանը, մեծ հայրն ու մեծ մայրը Տէր և Տիկին Տոքթ. Կապրիէլ Հէչէմեան, ինչպէս նաև ընտանեկան բոլոր պարագաները, մաղթելով նորածին մանկան երջանիկ և երկար կեանք։

**

Ուրախութեամբ տեղեկացանք, որ Տէր եւ Տիկին Սարգիս եւ Սիլվա Ժամկոչեաններ, 24 Յունիս 1995ին, Թորոնթոյի մէջ բախտաւորուած են երրորդ զաւակով մը, զոր անուանակոչած են Արթին։

Այս ուրախ առթիւ խմբագրութիւնս կը շնորհաւորէ նորածինին ծնողքը, մեծ ծնողները՝ Տիկին Վիքթորիա Ժամկոչեանն ու Տէր եւ Տիկին Սարգիս Կապէեանները, մաղթելով արեւշատ եւ երջանիկ կեանք նորածին մանկան։

## ՄԱՀԱԶԴ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը եւ Ե.Գ.Մ. Հոգաբարձութիւնը խորունկ վշտով կը ծանուցանեն մահը եկեղեցւոյ նուիրեալ՝

### ՓԱՆՈՍ ՄԵԼՔՈՆԵԱՆԻ

որ հանգեաւ ի Տէր Կիրակի, 9 Յուլիս 1995ին Իտալական հիւանդանոցին մէջ, յետ երկարատեւ հիւանդութեան։

Թաղման կարգը տեղի ունեցաւ Ամենայն Սրբոց Մատրան մէջ, Կիրակի 9 Յուլիս 1995, կէսօրէ վերջ ժամը 1ին եւ եւ մարմինը ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ։

Հոգին այնոցիկ ում ննջեն ի Տէր։

ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տոքթ. և Տիկին Ժորժ և Արշօ Բէմպուլեան և զաւակը Միշէլ, Այրի Տիկին Ռոզ Էմիրզեան (Մելպուրն), Տէր և Տիկին Արսէն Էմիրզեան և զաւակը, Տէր և Տիկին Սարգիս Էմիրզեան և զաւակունք (Մելպուրն), Տեարք Թոնի և Արմէն Էմիրզեան (Մելպուրն), Այրի Տիկին Զարուհի Եագուպեան (ԱՄՆ), Տիար Տիգրան Եագուպեան (ԱՄՆ), Տիկին Անժէլ Եագուպեան (ԱՄՆ), Տոքթ. Տի Սոնա Եագուպեան (ԱՄՆ), Տէր և Տիկին Աբրահամ Եագուպեան և զաւակունք (ԱՄՆ) ինչպէս նաեւ Կուպրան (Մելպուրն), Մուճիչաքա (Մելպուրն), Ոսկեան (ԱՄՆ) Թասլաքեան (ԱՄՆ), Ժամկոչեան (ԱՄՆ), Աթաչեան (ԱՄՆ), Սալպաշեան (ԱՄՆ) և Գէորգեան (ԱՄՆ) ընտանիքները կը ծանուցանեն, թէ Կիրակի 6 Օգոստոս 1995ին, յաւարտ Ս. Պատարագի, Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Մատրան մէջ, հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ մօր, մեծ մօր, հօրաքրոջ և ազգականին՝

### ՈՂԲ. ԷՕԺԷՆԻ ՆԱԶԱՐԵԱՆԻ
(ԾՆԵԱԼ ԹՈՐՈՍԵԱՆ)

Մահուան քառասունքին առթիւ։

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| | Պարզ փոստ | Օդային փոստ |
| --- | --- | --- |
| Եգիպտոսի բաժանորդներէն | 6 Ե.Ո. | — |
| Արաբական երկիրներ | — | 5 տոլար |
| Եւրոպայի, Ամերիկայի, Գանատայի, Աւստրալիոյ եւ այլ երկիրներու բաժանորդներէն | 15 տոլար | 30 տոլար |

## ՔԱՋԱԼԵՐԵՆՔ ՀԱՅ ՄԱՄՈՒԼԸ

### «ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ»ԻՆ

Ան ի գնահատութիւն Սրահիս տարած ազգանուէր գործունէութեան ՈՄՆ կը նուիրէ 25

### ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրեցեալ մօր եւ մեծ մօր Ողբ. Էօժէնի Նազարեանի մահուան եւ քառասունքին առթիւ, անոր քաղցր յիշատակին, Տոքթ. եւ Տիկին Ժորժ և Արշօ Բէմպուլեան եւ զաւակը Միշէլ կը նուիրեն.

Եկեղեցւոյ Պայծառութեան 25
Ամենայն Սրբոց
Գերեզմանատան 25

### ԱՂԵՔՍ. Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐԻՆ

Անի Ճամճեանի ընդ Պարգև Սարգիսեանի նշանախօսութեան ուրախ առթիւ կը նուիրեն.

Տէր և Տիկին
Եդուարդ Դաւիթեան 50
Տոքթ. և Տիկին
Արթօ Արթինեան 50
Տիար Վրէժ Սէֆէրեան 50

### ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Շնորհակալութեամբ ստացանք ԸՆԿ. ՏԻԳՐԱՆ ՍԱՐԱՖԵԱՆԷ (Պէյրութ) փոխան բաժանորդագրութեան 20 ամերիկեան տոլար:

## «ԱՐԵՒ» ՕՐԱԹԵՐԹԻ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՆՇՈՒՄԸ

(Շար. Գ. էջէն)

րոպեանի, Քաղաքական Ժողովի ատենապետ Պր. Հրաչ Սիմոնեանի եւ ձեռնարկի կենահայրերուն։

Փակման խօսքը ըներլու հրաւիրուեցաւ Սրբազան Հայրը, որ պատշաճ արտայայտութիւններով եւ բարեմաղթութիւններով փակեց հանդիսութիւնը։

Ուրախ զեղարուեստական յայտագիր՝ սոյն հաւաքոյթի հանդիսութեան ընթացքին օրկի վրայ ելոյթ ունեցաւ ծանօթ դաշնակահար Սերճ Սահէֆեան, որ մեծապէս գնահատուեցաւ ներկաներուն կողմէ։

Այս պանծալի տարեդարձին առթիւ «Ջահակիր» եւ իր երջանիկ գոհունակութեամբ կը մեծարեն բոլոր անոնց, որոնք իրենց գիտակից աշխատանքով կը շարունակեն իրենց անձնանուէր, յատկապէս այժմու «Արեւ»ի ծրագրի խմբագիր՝ Պր. Յովհաննէս Տէր Պետրոսեանի։

Ա. Մ.

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը:

Չէք ղրկել «M. BALAYAN»ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս:



## Հ.Մ.Ը.Մ.ՆՈՒՊԱՐ - ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ

### ՊԱՍՔԷԹ-ՊՈԼԻ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՄՐՑԱՇԱՐՔ

Ուրբաթ 21 եւ Կիրակի 23 Յուլիս 1995

ՆՈՒԻՐՈՒԱԾ

ԵԳԻՊՏՈՍԻ ՊԱՆԾԱԼԻ ՅԵՂԱՓՈԽՈՒԹԵԱՆ 34-ՐԴ ԱՄԵԱԿԻՆ

ԵՒ

ՄԻՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅ ՄԱՐԶԱՎԱՅՐԻՆ ԲԱՑՄԱՆ 35 ԱՄԵԱԿԻՆ

ՍԻՐԱՅՕԺԱՐՕՐԷՆ ՏՐԱՄԱԴՐՈՒԱԾ Հ.Բ.Ը.-ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

Մրցաշարքը իր ներկայութեամբ կը պատուէ՝

Եգիպտոսի մօտ ՀՀ Արտակարգ եւ Լիազօր դեսպան

ԴՈԿՏ. ԷՏՈՒԱՐՏ ՆԱԼՊԱՆՏԵԱՆ ԵՒ ԱԶՆՈՒԱՓԱՅԼ ՏԻԿԻՆԸ

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ

Ատենապետ Գահիրէի Պատկ. Թեմական Ժողովի

Մրցաւարքին բաժակը նուիրուած են

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆ

Մրցաւարքին մետալները նուիրուած են

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ՎԱՐԴ ԱԼԵՔՍԱՆԵԱՆ

ՄՐՑՈՒՄՆԵՐՈՒՆ ՅԱՅՏԱԳԻՐԸ

Ուրբաթ 21 Յուլիս 1995

Ա- մրցում երեկոյեան ժամը 8-ին ԿԱՄՔ ընդդէմ Հ.Մ.Ը.Մ.-ԱՐԱՐԱՏ

Բ մրցում երեկոյեան ժամը 9.30-ին Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ (Հելպ.) ընդդէմ Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ (Աղեք.)

Կիրակի 23 Յուլիս 1995 կ.ե. ժամը 8-ին

ԱՒԱՐՏԱԿԱՆ ՄՐՑՈՒՄ

Ուրբաթ օրուայ երկու յաղթական խումբերուն միջեւ

**

Շաբաթ 22 Յուլիս 1995

### ՏԱՐԵԿԱՆ ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

«ՌԱՄՍԷՍ ՀԻԼԹՈՆ»

ՇՔԵՂ ՊԱՆԴՈԿԻ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

ԷՍԹՐԱՏԱՅԻՆ ԵԼՈՅԹՈՎ ԿԸ ԽԱՆԴԱՎԱՌԷ ՖՐԱՆՍԱՅԷՆ ՅԱՏԿԱՊԷՍ ՀՐԱՒԻՐՈՒԱԾ

ՀԱՄԲԱՒԱՒՈՐ ԵՐԳԻՉ

ՄԱՐԹԷՆ ԵՈՐԿԱՆՑ

ԵՒ ԻՐ ՖՐԱՆՍԱՀԱՅ ԴԱՇՆԱԿԱՀԱՐ

ԱՇՈՏ ԲԱՐՍԵՂԵԱՆ

Տոմսերը ապահովելու համար կը խնդրուի դիմել Միութեանս վարչութեան անդամներուն

**

ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Ամառուայ եղանակի ընթացքին շարժումիս ջոկերու բաժիններուն հաւաքոյթները տեղի կ՚ունենան՝

ԱՄԷՆ ՈՒՐԲԱԹ ՕՐԵՐԸ Կ.Ե. ԺԱՄԸ 6.30ԷՆ 8.00



دار عروبة للطباعة — رقم الايداع بالكتب ٥٠٨

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
3 ՕԳՈՍՏ. 1995

## ԾՆՈՒՆԴ

Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Ժօրժ եւ Նայիրի Սիմոնեաններ, Կիրակի 23 Յուլիս 1995ին, բախտաւորուած են առոյգ դստրիկով մը, զոր անուանակոչած են Մարինա։

Այս բարեբաստիկ առիթով «Ջահակիր» ջերմօրէն կը շնորհաւորէ նորածինին ծնողքը, մեծ ծնողները՝ Տէր եւ Տիկ. Նուպար Սիմոնեանները ու Տէր եւ Տիկին Մենուաշ Խորասանճեանները նաեւ մեծ մեծմայրիկը Տիկ. Ինոն Տիգրանուհի Սիմոնեան, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները, մաղթելով նորածինին մանկան երջանիկ եւ երկար կեանք։

## ԾԱՆՈՒՑՈՒՄ

Գալուստեան — Նուպարեան Ազգային վարժարաններու նախկին աշակերտներու 3-րդ համաշխարհային

### ՎԵՐԱՀԱՆԴԻՊՈՒՄ

20-30 ՀՈԿՏԵՄԲԵՐ, 1995 ՍԻՏՆԻ - ԱՒՍՏՐԱԼԻԱ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐԱՇՆՈՐՀ ՏԷՐ ԱՂԱՆ ԱՐՔ. ՊԱԼԻՕԶԵԱՆԻ

Բարեխնամ Առաջնորդ Աւստրալիոյ եւ Նոր Զելանտայի, Հայրապետական Պատուիրակ Հեռաւոր Արեւելքի

ՊԱՏՈՒՈՅ ՀԻՒՐ՝

ԳԵՐԱՇՆՈՐՀ ՏԷՐ ԶԱՒԷՆ ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆ

Բարեխնամ Առաջնորդ Հայոց Եգիպտոսի

ԵԳԻՊՏՈՍԻ ՀԱՄԱՐ ՑԱՏԿԱՊԷՍ.-

Օդանաւի տոմս

Գահիրէ՝ Սիտնի՝ Գահիրէ (Singapore Airlines, Economy class) Չափահասներու համար (մօտաւորապէս) 5000 Ե.Ո. (Աւստ. տոլար 2000)։ Փոքրերու համար (2-12 տարեկան) 3250 Ե.Ո. (Աւստ. տոլար 1300)։

## ՈՒՂԵԳՐՈՒԹԻՒՆ

*Ուրբաթ 20 Հոկտեմբեր*
*Հաւաքոյթի արձանագրութիւններ*
Novotel *Հիւրանոցին մէջ տեղի կ'ունենայ*
*ԳՈՔԹԷՅԼ ՓԱՐԹԻ երեկոյեան ժամը 7.30էն 10.30*

*Շաբաթ 21 Հոկտեմբեր կ.ե. ժամը 7ին*
*ԸՆԹՐԻՔ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ*
*Մասնակցութեամբ «ԱՐԱՔՍ» խանդավառ նուագախումբի*

*Կիրակի 22 Հոկտեմբեր*
Champagne Brunch (Buffet)
*Առաւօտեան ժամը 11էն երեկոյեան ժամը 3*
*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՑՈՅՑԱԳԻՐ*
*Խօսք Առաջնորդներու - Արտասանութիւն*
*Խմբերգ — Ջութակ — Պար*

*Երկուշաբթի 23 Հոկտեմբեր*
*ՆԱՒԱՊՏՈՅՏ* Sydney Harbour
*Կէսօրէ ետք ժամը 2էն 6*

*Երեքշաբթի 24 Հոկտեմբեր*
*Մեկնում Սիտնիի օդանաւակայանէն դէպի*
Surfers Paradise (Gold Coast)
*Ներառեալ ընթրիք (առաջին գիշերուայ համար) եւ նախաճաշ (4 օր), 5* Star ANA Hotel,
*ՆԱՒԱՊՏՈՅՏ ԵՒ ՇՐՋԱՊՏՈՅՏ*

*Շաբաթ 28 Հոկտեմբեր*
*Մեկնում* ANA *Հիւրանոցէն եւ վերադարձ Սիտնի*

*Կիրակի 29 Հոկտեմբեր*
*ԶԲՕՍԱԽՆՃՈՅՔ*
*Առաւօտեան ժամը 10.30էն երեկոյեան ժամը 5.30*
*Մեկնում օթօպիւսով* Novotel *Հիւրանոցէն*
*դէպի հրաժեշտի զբօսավայրը՝ Արարատ դաշտավայր*
*Պիտի վաճառուի՝*
*խորոված, զովացուցիչ, գարեջուր և անուշեղէններ*

*Երկուշաբթի 30 Հոկտեմբեր*
*Ազատ օր եւ վերադարձ*

Սիրելի բարեկամներ,
Նախապէս վերապահեցէք ձեր տոմսերը անմոռանալի ժամանակ մը անցընելու համար, դիմելով Պր. Միսաք Չէքմէճեանին, հեռ. 5909846, Գահիրէ։

ԾԱՆՕԹ.- Բոլոր միջոցառումներուն եւ ձեռնարկներուն մասնակցիլը պարտաւոր չէ։

ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉ ՄԱՐՄԻՆ - ՍԻՏՆԻ - ԱՒՍՏՐԱԼԻԱ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

*Իրենց սիրելի ամուսնոյն, հօր մեծ հօր, ողբ. Սերոբ Թիւթիւնճեանի մահուան 14րդ տարելիցին եւ անմոռանալի յիշատակին առթիւ Տիկին Նուարդ Թիւթիւնճեան եւ զաւակունք կը նուիրեն.*

*Ս. Պօղոս-Պետրոս*
*Եկեղեցւոյ Պայծառութեան* 40
*Տիգրան Երկաթ*
*Մշակ. Միութեան* 40
*Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի (Աղեքս.)* 40
*«Արեւ»ին* 40
*«Ջահակիր»ին* 40
*(Ստանալ «Արեւ»էն)*

## ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

*Շնորհակալութեամբ ստացանք.- ՏԻԿԻՆ ՆԵԿՏԱՐ ՄԵՐՃԱՆԵԱՆԷ (Գանատա) 1995 տարւոյ բաժանորդագինը՝ 30 ամ. տոլար։*

## ԲԱԲԳԷՆ ԱՐԱՐՔՑԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԺՈՂՈՎԻ ՆԱԽԱԳԱՀ

*(Շար. Ա. էջէն)*

հովելու խորհրդարանական գործունէութեան ժառանգականութիւնը։

Անդրադառնալով ընտրութիւններին քաղաքական արդիւնքներին՝ ամենակարեւորը կարելի է ասել պատմական նշանակութիւն ունեցող արդիւնքը, ես համարում եմ այն որ Հայաստանը փաստօրէն դարձաւ կոմունիստական համակարգի երկրներից միակը, որտեղ կոմունիստները չկարողացան ուանց վերցնել»:

«Ընտրութիւնների երկրորդ կարեւոր արդիւնքը ազատական ժողովրդավարական աջ ուժերի համոզիչ յաղթանակն էր»։

«Ընտրութիւնների երրորդ նշանակալից արդիւնքը պէտք է համարել Հայաստանի կանանց, մասնաւորապէս՝ «Շամիրամ» Միութեան յաջողութիւնը, որը հասարակական կեանքում կանանց դերի բարձրացման պերճախօս վկայութիւնն է։ Բաւական է նշել, որ եթէ նախորդ խորհրդարանում կանայք կազմում էին պատգամաւորների 2,5 տոկոսը, ապա Ազգային ժողովում նրանք ներկայացուած են արդէն 5,5 տոկոսով»։

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը:

Չէք ղրկել «M. BALAVAN»ի անունին եւ ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ԸՆՏՐԱԿԱՆ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Այսու կը հաղորդենք Գահիրէի մեր ժողովուրդին, թէ Գահիրէի Թեմական Ժողովի ընտրութիւնները տեղի պիտի ունենան Կիրակի, 19 Նոյեմբեր 1995ին։ Առ այդ կը հրաւիրենք մեր համայնքին երկու սեռէ անդամներէն բոլոր անոնք՝ որ

ա.- Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ զաւակ են.

բ.- Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան հպատակ են անձամբ կամ հօր հպատակութեամբ եւ ունին այս պարագան հաստատող վկայագիր (կինոյի)։

գ.- Ընտրութեան թուականին 21 տարին լրացուցած կ'ըլլան.

դ.- Առնուազն երկու տարիէ ի վեր կը բնակին Գահիրէի մէջ կամ Գահիրէի շրջանին պատկանող վայրերու մէջ.

ե.- Անուանարկիչ դատապարտութիւն չեն կրած.

զ.- Սնանկացած կամ արգելումի չեն ենթարկուած.

Ներկայանան Գահիրէի Ազգային Առաջնորդարանը, լեցնելու համար իրենց յայտարարագիրները, միասին բերելով իրենց հպատակութեան թուղթը եւ ծննդեան վկայականը, վերջին պայմանաժամ 6 Սեպտեմբեր 1995։

Անոնք որ նախկին ընտրութիւններու առթիւ լեցուցած են իրենց ընտրական յայտարարագիրները, պէտք չունին նորերը լեցնելու։

Ըստ կազմական կանոնագրի 21րդ յօդուածի տրամադրութեան, ընտրելու իրաւունք ունեցող ազգայիններու անուանացանկը ընտրութեան թուականէն երկու ամիս առաջ պիտի կախուի Ազգային Առաջնորդարանին մէջ, ի տես ժողովրդեան եւ ստուգումի համար։

ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍ. ՉԻՆՉԻՆԵԱՆ
ԱՌԱՋՆՈՐԴ ՀԱՅՈՑ ԵԳԻՊՏՈՍԻ



# ՄԱՄՈՒԼԸ ԴՊՐՈՑ Է

# Հալէպի՝ Ն.Ս.Մ.Մ. Պարախումբի Փարահեղ Ելոյթը Գահիրէի Մէջ

(Շար. Ա. էջէն)

յայտնեց թէ այս բոլորը կը պարտինք պարախումբի գեղարուեստական ղեկավար, վաստակաւոր պարուսոյց՝ Աբրահամ Կոստանեանի։

Պարախումբին հաղորդավար՝ Օր. Յասմիկ Գույումճեանի արտայայտութիւններով, պարախումբը անցաւ ներկայացումներուն։

Ամբողջ հայկականութեամբ տոգորուած այդ երկսեռ երիտասարդութիւնը, մօտ երկու ժամ անդադար, իրենց աշխոյժ, ճկուն ու նազանի պարերով խլեցին ներկաներուն բուռն ծափերը։ Հայկական, կովկասեան, սուրիական եւ այլ պարերու ներկայացման ընթացքին, մէջընդմէջ մեներգներով ելոյթ կ'ունենային շնորհալի երգչուհիներ՝ Օր. Յասմիկ Գույումճեան եւ Տիկ. Սիլվա Բէշէճեան։ Իրենց ճոխ հանդերձանքը, քայլերու համաչափութիւնը և մանաւանդ բարձրարուեստ կատարումը բերկրանք կը պատճառէր բոլորին։

Փակման խօսքով հանդէս եկաւ ընկեր Ա. Մովսէսեան և յատուկ շնորհակալութեան խօսք յայտնեց պարախումբի բոլոր անդամ-անդամուհիներուն եւ անոնց պատասխանատուներուն, օրուան նախագահներուն ինչպէս նաեւ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի վարչութեան, որ սիրով տրամադրեցին մարզարանը, իր բոլոր սարքաւորումներով։

Հանդիսութեան աւարտին, Հալէպի Ն.Ս.Մ.Մ.ի վարչութեան կողմէ, յուշանուէրներ յանձնուեցան, նախ Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի վարչութեան ատենապետ Պր. Հրաչ Սիմոնեանի, ձեռամբ՝ պարախումբի վարչութեան ատենապետ ընկեր Ճորճ Գույումճեանի, ապա՝ Հայկ. Ընթերցասրահի վարչութեան ատենապետ ընկեր Եդուարդ Աւագեանի, ձեռամբ ընկեր Կարպիս Լէփէճեանի։

Ապա տեղի ունեցաւ մտերմիկ ընդունելութիւն - պատուասիրութիւն մը, «դամատայ»ութեամբ Հայկ. Ընթերցասրահի վարչութեան ատենադպիր ընկեր Պետրոս Մովսէսեանի։ Յաջորդաբար խօսք առնելու հրաւիրուեցան ընկեր Կ. Լէփէճեան, Պր. Նշան Վարդեան եւ արուեստագէտ Աբիկ Կոստանեան։ Անոնք իրենց խօսքին մէջ յատկապէս դրուատեցին պարախումբին տարած մեծ դերը սփիւռքի մէջ։ Ապա յաջողութեան մաղթանքներ ընելով փակեցին իրենց խօսքը։

Վարձքը կատար բոլոր անոնց, որոնք սատար հանդիսացան սոյն ձեռնարկին յաջողութեան, յատկապէս՝ ակումբիս Տիկնանց «Մարօ» Յանձնախումբի շնորհալի տիկիններուն։

Բարի երթ կը մաղթենք պարախումբի բոլոր անդամ-անդամուհիներուն եւ անոնց ղեկավարներուն, ակնկալելով որ յառաջիկային եւս առիթը պիտի ունենանք կրկին վայելելու եւ տեսնելու Եգիպտոսի բեմերուն վրայ։

Մ. Գ.

# ՀԱԼԷՊԻ Ն.Ս.Մ.Մ. ՊԱՐԱԽՈՒՄԲԸ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

(Շարունակութիւն Ա. էջէն)

Պարախումբը ունի իր յատուկ վարչութիւնը կազմուած հետեւեալ ընկերներէ՝ Ճորճ Գույումճեան (ատենապետ), Օր. Ազատ Հաճեան, Տիկ. Դշխուհի Մեսրոպեան, Սեպուհ Գաբրիէլեան, Սարգիս Գույումճեան եւ Վարուժան Մեսրոպեան։ Ունի թեքնիք կազմ, բաղկացած հետեւեալ ընկերներէ՝ Վիգէն Փիլիպպոսեան (ձայնի եւ լոյսի պատասխանատու) եւ Վարդի Գույումճեան (ձայնի օգնական) որոնց կրկին վերոյիշեալ վարչականները կը կատարեն նաեւ դիմայարդարման եւ հագուստներու պատրաստութեան աշխատանքները։





Հալէպի մէջ 50 երկսեռ պարողներու այս խումբը ծնունդ առած է 1984ին եւ առաջին ելոյթները տուած է 1985ին, Հալէպի մէջ։ Նոյն տարուայ աշնան մասնակցած է «Պոսրա Էլ Շամի» միջազգային փառատօնին, Դամասկոսի՝ «Գասր Էլ Ազըմ» եւ Հալէպի՝ բերդի մասնակի ելոյթներուն։ 1988ին, Սփիւռքահայութեան հետ Մշակ. Կապի Կոմիտէի հրաւէրով պարախումբը նուիրախաղերով ելոյթներ ունեցած է Հայրենի Երեւանի, Լենինականի (Գիւմրի) եւ Կիրովական քաղաքներուն մէջ, այս ձեւով մը խումբին համար քննութիւն մըն էր, նաեւ պարուսոյց Աբրահամ Կոստանեանին արուեստի շնորհներուն դրսեւորումը։ Այդ օրերու Հայրենի մամուլը դրուատանքով գրած է պարախումբի մասին ընդհանրապէս եւ մասնաւորապէս պարուսոյցին մասին։

Հոս ամփոփ գիծերու մէջ ներկայացնենք արուեստագէտ Ա. Կոստանեանը։ Ծնած է Հալէպ, յաճախած է տեղի Կիլիկեան ճեմարանը եւ որպէս շնորհալի պարող, ծնողները զինք կը ղրկեն Հայրենիք՝ Երեւանի պարարուեստի ուսումնարանը, ուրկէ շրջանաւարտ կ'ելլէ 1978ին, լաւագոյն գնահատականով։ Ապա ան կը վերադառնայ Հալէպ. նախ կ'աշխատի Կրթասիրաց Մշակ. Միութեան հետ, ապա Համազգայինի հետ սակայն երկար չի տեւեր այս խումբերուն կեանքը։ 1984ին «Նոր Սերունդ»ի վարչութիւնը որպէս իր հարազատ ընկերը, Աբիկ Կոստանեանը կը հրաւիրէ կազմելու համար «Նոր Սերունդ»ի պարախումբը։ Ահա այդ թուականէն մինչ օրս 12 տարի անցած է, եւ «Նոր Սերունդ»ի պարախումբն ու արուեստագէտ Կոստանեանը նոյնացած են։

1988ի ամառը, խումբը հրաւէրներ ստացած է Կիպրոսի Հ.Բ.Ը. Միութենէն եւ Աթէնքի «Արաքս» Մշակ. Միութենէն, ուր ելոյթները անցած են բարձր մակարդակով։ Խօսքը տանք իրեն՝ պարուսոյցին. «Մեզի համար ամէնակարեւորը Հայրենիքի մէջ մեր նուիրախաղերն էին, հոն ժողովուրդը մեզ կը գնահատէ, չէ որ կան այնպիսի պետական խումբեր, ինչպէս Պետական անսամպլն ու Երգի-պարի անսամպլը. կար նաեւ ուսուցիչիս՝ Ազատ Ղարիպեանի կազմած «Կռունկ» պարախումբը եւ այլ որակաւոր խումբեր։ Մենք պէտք էր ներկայանայինք ամենայն լրջութեամբ. բարեբախտաբար արդիւնքը հրաշալի էր. Հայրենի ժողովուրդը իր ջերմ ծափողջոյններով բարձր գնահատեց մեզի եւ մենք աւելի ինքնավստահ սկսանք ներկայանալ հայ թէ օտար հանրութեան»։

Այնուհետեւ պարախումբը մշակութային ներկայութիւն մը եղաւ սուրիական պետական մակարդակի տօնախմբութիւններուն մէջ։ 1991, 1992 եւ 1993ին յատուկ հրաւէր Լաթաքիոյ մէջ կայացած՝ միջազգային «Մահապպէ ուա սալամ» փառատօնին։ 1994ին՝ Յորդանանի «Ճարաշ» քաղաքի միջազգային փառատօնին եւ ահա 12 տարուայ հարուստ փորձառութենէ մը յետոյ հրաւէր՝ Իսմայիլիա քաղաքի 6րդ միջազգային փառատօնի կազմակերպիչներէն։ Արդարեւ ըսենք թէ հայկական այս պարախումբը մեծապէս հմայած ու խանդավառած է փառատօնի ընթացքին, Իսմայիլիայի մէջ գտնուող, բոլոր արաբ թէ օտար հասարակութիւնը։

«Նոր Սերունդ»ի վարչութիւնը այս տարուայ իր ծրագրին մէջ նկատի առած է հիմնելու պալէի ու ազգագրական պարերու դպրոց եւ թատերական ստուդիօ», յայտնեց վարչութեան ատենապետ՝ ընկ. Կարպիս Լէփէճեան ապա շարունակեց.

«Հալէպի «Նոր Սերունդ»ի մշակութային գործունէութեան դաշտը բաւական ծաւալուն է, ունի երեք ենթավարչութիւններ, որոնք կը ղեկավարեն «Նոր Սերունդ»ի պարախումբը, «Անդրանիկ» դարձեալ Հալէպի ամենաերկարակեաց թատերախումբը (հիմնուած 1921ին), գրական եւ ընկերային վարչութիւնները, որոնք հսկայ բանակ մը կը կազմեն իրենց անդամներով միասին»։

Բարի երթ եւ կանաչ լուսաւոր ճանապարհ, սիրելի նոր սերնդականներ։

Ա. Մ.

# ՋԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨
صاحبة الامتياز: السيدة عايدة سيروبيان (بالايان)

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1320 — ՀԻՆԳՇԱԲԹԻ 12 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1995 ՀԱՏԸ ՉԵՌՔԷ 25 Եգ. Դհկ. عدد رقم ١٣٢٠ — الخميس ١٢ اكتوبر ١٩٩٥


## ՈՂԲ. ՍԱՐԳԻՍ ՊԱԼԱԵԱՆԻ ԱՆԹԱՌԱՄ ՅԻՇԱՏԱԿԻՆ

### (ՄԱՀՈՒԱՆ ԱՌԱՋԻՆ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ)

Որքան ալ մանր տրամաբանական ըլլայ, դժուար է հաշտուիլ բացակայութեան հետ։ Ահաւասիկ տարի մը անցած է այն օրէն, երբ եգիպտահայ եւ գաղութահայ համայնքը կորսնցուց իր արժանաւոր հայորդիներէն մին, եւ սակայն մինչեւ այսօր կը փնտռենք զինք։



Ողբացեալ ընկեր Սարգիս Պալաեան թէեւ 18 տարիներ առաջ հաստատուած էր Գանատա, սակայն միշտ կը հետաքրքրուէր ու կը զբաղուէր «Ջահակիր»ով։ Նոյնպէս մտահոգուած էր Հայկական Ընթերցասրահի գործունէութեամբ։ Եւ ինչպէս պիտի մոռնար ան, երբ «Ջահակիր» շաբաթաթերթի՝ (Նոր շրջանի) հիմնադիր-սեփականատէրը եղած է։ Իսկ իր այնքան սիրած՝ Հայկ. Ընթերցասրահի ցկեանս պատուոյ նախագահը։ Եղած է նաեւ Հնչակեան հաւատաւոր ղեկավար մը, վաստակաւոր խմբագիր, մտաւորական մը, եգիպտահայ ազգային գործիչ մը եւ ընտանիքի տիպար հայր մը։

Ընկեր Սարգիս յարգուած էր բոլորէն անխտիր, շնորհիւ իր ուղղամիտ, անկեղծ եւ յանդուգն բնաւորութեան։ Իր բազմաթիւ գրութիւններուն կամ բոցաշունչ ճառերուն մէջ արտայայտուած է արդարօրէն, անվախօրէն, պաշտպան կանգնելով թէ՛ իր կուսակցութեան սկզբունքներուն եւ թէ՛ Հայաստանի վերելքին։

Վետերան ընկերոջ ամբողջ կեանքը եղաւ բոլորանուէր ծառայութիւն եւ զոհողութիւն։ Գաղափարապաշտ իր խառնուածքով, համոզուած էր որ Հնչակեան կուսակցութիւնը կարեւոր դեր մը ունի կատարելիք արտասահմանի թէ հայրենիքի մէջ եւ համահայկական գործունէութեամբ մը կարելի պիտի ըլլայ փրկել «մնացորդաց»ը ներկայ Հայաստանի շուրջ համախմբելով զանոնք։

Իր կեանքի օրացոյցի թերթիկը այլեւս սառած մնացած է՝ 3 Հոկտեմբեր 1994 թուականին վրայ, սակայն իր հայութեամբ, իր մարդկայնութեամբ եւ իր վաստակով դարձած է անմոռանալի յիշողութիւն։

Թող այս տողերը ըլլան անոր անմոռաց բարի յիշատակին իբրեւ յարգանք, իր հեռաւոր շիրիմին վրայ այս օրերուն։

ԱՒԵՏԻՍ ՄՈՎՍԷՍԵԱՆ

## ՊԱՇՏՕՆԱԿԱՆՔ

### ՇՆՈՐՀԱՒՈՐԱԿԱՆ ՀԵՌԱԳԻՐ

6 Հոկտեմբերի յաղթութեան տարեդարձին առիթով, Եգիպտոսի Թեմական իշխանութեանց եւ մեր համայնքներու անդամ-անդամուհիներու անունով, ներքոյիշեալ շնորհաւորական եւ բարեմաղթութեան հեռագիրը ղրկուեցաւ երկրիս իմաստուն նախագահին։

*ՏԻԱՐ ՄՈՀԱՄՄԷՏ ՀՈՍՆԻ ՄՈՒԲԱՐԱՔ*
*Նախագահ Եգիպտոսի Արաբական Հանրապետութեան*
*Նախագահական պալատ*

*Գահիրէ*

*Հոկտեմբերեան փառաւոր յաղթանակի տարեդարձին առիթով, յաղթանակ, որուն ակնյայտ հերոսներէն մին ալ դուք էիք, եւ որ Եգիպտոսի եւ Արաբական աշխարհին արժանապատուութիւնը վերականգնեց, հաճոյքով եւ ջերմ զգացումներով Հայ Օրթոտոքս եկեղեցւոյ բոլոր Եգիպտոսի զաւակներուն եւ մեր Մակլիս Միլլիներուն անունով, Ձեզ կը յայտնենք սրտագին շնորհաւորանքներ և ամենաջերմ մաղթանքներ։ Շնորհաւորանքներ ալ կը յայտնենք, Պաղեստինեան իշխանութեան լայն իրաւունքներ ստացուելուն համար, որը Ձեր յարատեւ և աննկուն ջանքերուն հետեւանքն էր, որպէսզի Պաղեստինցի մեր եղբայրները վերատիրանան իրենց իրաւունքներուն։*

*Մենք միշտ կ'աղօթենք և պիտի աղօթենք որ Բարձրեալն Աստուած Ձեր բոլոր քայլերը առաջնորդէ դէպի յառաջդիմութիւն, յաջողութիւն, խաղաղութիւն և համազգային միութիւն։*

*ԶԱՒԷՆ ԱՐՔԵՊՍ. ՉԻՆՉԻՆԵԱՆ*
*Առաջնորդ Հայոց Եգիպտոսի*

*ՏԵՂԵԿԱՏՈՒ ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ*

## Հայաստանը ԵԱՀԿ-ի Սեմինարում

*Հայաստանի Հանրապետութեան պատուիրակութիւնը՝ Եգիպտոսում ՀՀ արտակարգ և լիազօր դեսպան Է. Նալպանտեանի գլխաւորութեամբ մասնակցում է Սեպտեմբերի 26ին Գահիրէում մեկնարկած «Վստահութեան ամրապնդման միջոցների ոլորտում Եւրոպայում անվտանգութեան և համագործակցութեան կազմակերպութեան փորձը» Սեմինարին, որը կազմակերպել է ԵԱՀԿ քարտուղարութիւնը։ Սեմինարին ներկայացուած են ԵԱՀԿ մօտ 30 անդամ պետութիւններ, ինչպէս նաեւ Միջերկրական ծովի աւազանի մի քանի ոչ անդամ երկրներ՝ Եգիպտոս, Մարոք, Ալժերիա Թունուզ, Իսրայէլ։*

*Սեմինարի նպատակն է ամփոփել վստահութեան և անվտանգութեան ամրապնդման բնագաւառում ԵԱՀԿ կուտակած փորձը և մօտեցումները, քննարկել հակամարտութիւնների կանխարգելման միջոցները, ինչպէս նաեւ երկխօսութիւն սկսել Միջերկրական ծովի աւազանում համընդհանուր վստահութեան մթնոլորտի ստեղծման հնարաւորութիւնների շուրջ։*

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

Սեպտեմբերի 28ին իր աշխատանքն աւարտեց «Վստահութեան ամրապնդման միջոցների ոլորտում Եւրոպայում անվտանգութեան եւ համագործակցութեան կազմակերպութեան փորձը» թեմայով սեմինարը, որին մասնակցում էր Հայաստանի Հանրապետութեան պատուիրակութիւնը։

Ինչպէս տեղեկացանք, սեմինարի նիստերից մէկի ժամանակ խօսք խնդրել Ատրպէյճանի ներկայացուցիչը եւ քննարկուող խնդիրների հետ բոլորովին չկապուած սկսել փնովել Հայաստանը Ատրպէյճանի նկատմամբ ագրեսիայի եւ նրա տարածքի մի զգալի մասի բռնազաւթման համար։ Այս կապակցութեամբ ՀՀ պատուիրակութիւնն անմիջապէս տարածել է իր յայտարարութիւնը՝ արժանի հակահարուած տալով ատրպէյճանցի դիւանագէտի անհեռատես խարդաւանքին։

(Շարունակութիւնը տեսնել էջ 2)

## Ս. Դ. Հնչակեան Կուսակցութեան 16րդ համագումարը Հայաստանի Մէջ

Սոցեալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան 16րդ համագումարը տեղի պիտի ունենայ 28էն 30 Հոկտեմբեր 1995ին, Հայաստանի մէջ։

Յիշենք թէ, կուսակցութեան 108 տարուայ գոյութեան ընթացքին առաջին անգամ ըլլալով, իր համագումարը տեղի կ'ունենայ անկախ հայրենի հողին վրայ։

Համագումարի գլխաւոր հարցերէն պիտի ըլլան՝ Հայաստանի Հանրապետութիւնը ու Լեռնային Ղարաբաղը եւ Հնչակեան կուսակցութիւնը։ Հայաստանն ու սփիւռքը։ Հայ եկեղեցին՝ դերն ու տագնապը եւ Հնչակեան կուսակցութիւնը եւ այլ հրատապ հարցեր։

Նոյնպէս Հայաստանի մէջ պիտի գումարուի Հ.Մ.Մ.ի Կեդրոնական Ընդհանուր Ժողովը յառաջիկայ 2 Նոյեմբեր 1995ին։

## ՄԵԾԱՄՕՐԸ ՏԱՐԵՎԵՐՋԻՆ ԿՐՆԱՅ ԵԼԵԿՏՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՐՏԱԴՐԵԼ

Ռուսական «Ռոսէներգաթոմ» հիմնարկի հանրային կապի պատասխանատուներէն Ս. Երմաքով յայտնած է, թէ կայանը հիւլէական վառելանիւթով լեցնելու եւ Ֆիզիքական գործարկումը յաջող անցնելու պարագային, տարուան վերջաւորութեան կը սկսի ելեկտրականութեան արտադրութիւնը։

Երմաքով ըսած է նաեւ, թէ «Հայկական հիւլէակայանում ներկայումս ճեղքուածքի առկայութիւնը լրիվին բացառուում է, որովհետեւ ԱԷԿ-ի զննումը կատարուել է ամրան եւ որեւէ Ֆիզիքական թերութեան առկայութեան դէպքում, դրանք կը յայտնաբերուէին ամրանը»։

(Շար. տես էջ 2)

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
26 ՀՈԿՏ. 1995

## ՆՇԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ

ՊՐ. ՌՈՒԲԷՆ Ն. ՍԻՄՈՆԵԱՆԻ

ընդ

ՕՐ. ՌԻԹԱ Ռ. ՇԻՄՇԻՏԵԱՆԻ

ԳԱՀԻՐԷ — 6 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1995

Ջերմօրէն կը շնորհաւորենք խօսեցեալ զոյգն ու անոնց յարգելի ծնողները՝ Տէր և Տիկին Նուպար Սիմոնեաններն ու Տէր և Տիկին Ռուբէն Շիմշիտեանները, մաղթելով խօսեցեալ զոյգին երջանիկ կեանք:

## ԴԱՇՆԱԿԻ ՄԵՆԱՆՈՒԱԳ

կատարմամբ

## ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆԻ

Երկուշաբթի, 6 Նոյեմբեր 1995, երեկոյեան ժամը 7.30-ին

Գահիրէի Ռուսական Մշակոյթի Կեդրոնի

Զայքովսքի հանդիսասրահին մէջ

Ցայտագիր՝ Զայքովսքի, Քէշիշեան, Էլ-Ռիմալի, Շոփէն

Մուտքը ազատ է

## ՍՏԱՑԱՆՔ "ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ" ՀՐԱՏԱՐԱԿՉԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄԷՆ

Խմբագրութիւնս շնորհակալութեամբ ստացաւ, ինչպէս ամէն տարի, Գահիրէի Ազգային Իշխանութենէն 500 եգ. ոսկիի գումարը, "ՓՕԼ ՔԻԼԻՏՃԵԱՆ Հիմնադրամի հաշւոյն:



Մանրամասնութեանց համար կարելի է դիմել "Ջահակիր"ի խմբագրատուն, ամէն երեկոյ ժամը 9-էն ետք, հեռ. 3914908 :

## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Տէր և Տիկին Էտուար Քիւփէլեան և դուստրը Մարի, իրենց սիրելի զաւկին և եղբօր՝ Պերճ Քիւփէլեանի համալսարանական յաջողութեան ուրախ առթիւ կը նուիրեն 100

Իրենց սիրեցեալ հօրեղբօր՝ Ողբ. Սարգիս Մ. Պալաեանի մահուան առաջին տարելիցին առթիւ և անոր քաղցր ու անմոռանալի յիշատակին, Տէր և Տիկին Վահէ և Հերմինէ Վարժապետեաններ կը նուիրեն 50

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Իրենց սիրեցեալ հօրեղբօր՝ Ողբ. Սարգիս Մ. Պալաեանի մահուան առաջին տարելիցին առթիւ և անոր քաղցր ու անմոռանալի յիշատակին, Տէր և Տիկին Մարտիկ Պալաեան, կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկ. Ընթերցասրահին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

Նոյն տխուր առթիւ, Տէր և Տիկին Դանիէլ Ծռճռեան, կը նուիրեն.

| | |
|---|---|
| Հայկ. Ընթերցասրահին | 25 |
| "Արեւ"ին | 25 |
| "Յուսաբեր"ին | 25 |
| "Ջահակիր"ին | 25 |

(Ստանալ "Ջահակիր" էն)

Իրենց սիրեցեալ ամուսնոյն և հօրեղբօր մահուան 12-րդ տարելիցին առթիւ, անոր քաղցր յիշատակին Տիկին Վրէժուհի Սարաֆեան և Տէր և Տիկին Վռամ Սարաֆեան (ԱՄՆ) կը նուիրեն.

| | |
|---|---|
| "Արեւ" ին | 25 |
| "Յուսաբեր" ին | 25 |
| "Ջահակիր" ին | 25 |

(Ստանալ "Ջահակիր" էն)

## ՀՄԸՄ ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.) ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄԻՆ

Առ ի քաջալերութիւն Շարժումիս կազմակերպած Խարոյկահանդէսին յաջողութեան, շնորհակալութեամբ ստացած ենք հետեւեալ նուիրատուութիւնները .

| | |
|---|---|
| Տէր և Տիկին Էտուար Դաւիթեան | 100 |
| Տիար Վրէժ Սէֆէրեան | 100 |
| Օր. Թագուհի Վարժապետեան | 100 |
| Տէր և Տիկին Դանիէլ Ծռճռեան | 100 |
| Տէր և Տիկին Լիպարիտ Զարպհանելեան | 100 |
| Տիկին Անի Թօսունեան և զաւակներ՝ Արթօ և Կարօ | 100 |
| Տէր և Տիկին Մուշեղ Պասմաճեան | 100 |
| Տէր և Տիկին Արամ Սահակեան | 100 |
| Տոքթ. և Տիկին Կարօ Թօսունեան | 100 |

## ԱՐՏԱՍԱՀՄԱՆԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Կը խնդրենք արտասահմանի մեր այն բաժանորդներէն, որոնք ցարդ չեն ղրկած իրենց բաժնեգինը, բարի ըլլան մեզի փութացնելու զայն, դիւրացնելու համար մեր գործը: Չէք կամ մանտա - փոստ ղրկել "M. BALAYAN"ի անունին և ուղարկել փոստարկղ թիւ 2111, Գահիրէ (11511), Եգիպտոս:

## ՊՐ. ԷՕԺԷՆ ԲԱԲԱԶԵԱՆ ՈՉ ԵՒՍ Է

Խոր կսկիծով տեղեկացանք յանկարծական մահը նախկին եգիպտահայ, Հ.Բ.Ը.Միութեան Կեդրոնական Վարչական Ժողովի անդամ, Հ.Բ.Ը.Մ.ի զուիցերիական իրավինակով ընկերակցութեան գանձապահ, ՌԱԿ-ի ղեկավար Զուիցերիոյ Հայ Առաքելական Եկեղեցւոյ Խորհուրդի նախկին ատենապետ, Գահիրէի Հայ Գեղարուեստասիրաց Միութեան նախկին ատենապետ, վաստակաւոր գործիչ՝ Պր. Էօժէն Բաբազեանի, որ տեղի ունեցած է Հայաստանի մէջ, իր այցելութեան շրջանին, 16 Հոկտեմբեր 1995ին, 67 տարեկանին:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը տեղի ունեցած երէկ Չորեքշաբթի 25 Հոկտեմբեր 1995ին Ժընեւի մէջ:

Այս տխուր առթիւ "Ջահակիր" իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ ողբացեալին այրիին, դուստրերուն և իրենց կուսակցական և ընտանեկան բոլոր պարագաներուն:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Մօ. Եդուարդ Յակոբեան, Տէր և Տիկ. Ժագ Յակոբեան և զաւակունք, Օրք. Անժէլ, Ժագլին և Պր. Պերճ Յակոբեաններ, Տիկին Գեղանոյշ Սարգիսեան, Տէր և Տիկին Գաբրիէլ Արապեան և դուստրը, Տիկին Սրբուհի Սարգիսեան և համայն սգակիր պարագաները, ներկայիւս կը ծանուցանեն, թէ Կիրակի 12 Նոյեմբեր 1995ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ, յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ կնոջ և ազգականին՝ յաւէտ Ողբ.

## ՄԱՐԿՐԻԹ - ՊԱՅՃԱՌ ՅԱԿՈԲԵԱՆԻ

մահուան հինգերորդ տարելիցին առթիւ:

Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:

## Պատմաբան Մոհամէտ Ռէֆաաթ Էլ - Իմամի Բանախօսութիւն

Կը տեղեկացնենք, որ Հինգշաբթի, 2 Նոյեմբեր 1995 երեկոյեան ժամը 5ին, տեղի պիտի ունենայ բանախօսութիւն մը, պատմաբան ՄՈՀԱՄՄԷՏ ՐԷՖԱԱԹ ԷԼ-ԻՄԱՄի կողմէ, նիւթ՝ "Հայոց Քրիստոնէական Առաքելութիւնը Օսմանեան Պետութեան Շրջանին", Գահիրէի Համալսարանի՝ գրականութեան կաճառի պատմութեան բաժնի դասախօսասրահին մէջ:

Նշենք թէ, պատմաբան Էլ Իմամ իր մագիստրոսի թէզը պաշտպանած է նիւթ ունենալով՝ "Եգիպտահայութիւնը 19-րդ դարուն":

Կը յուսանք որ համայնքի գիտակից ազգայինները ներկայ պիտի գտնուին սոյն շահեկան բանախօսութեան:

ԽՄԲ.

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ

ՏՐԱՄԱԴՐԵԼԻ ԵՆ

ԱՒԱՆԴԱԿԱՆ ԴՕՓԻԿ, ԼԱՀՄԱՃՈՒՆ, ՔՈՒՊԷՊԱ, ՄԱՆԹԸ, ՏԵՐԵՒԻ ԼԻՑՔ ԵՒ ԳԱՆԵԼՈՆԻ

Բոլոր անոնք որոնք կը փափաքին ունենալ, թող հաճին դիմել սրահ ամէն երեկոյ ժամը 7 -11 և կամ հեռաձայնել 3914908 թիւին:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ

| | Պարզ փոստ | Օդային փոստ |
|---|---|---|
| Եգիպտոսի բաժանորդներէն | 6 Ե.Ո. | — |
| Արաբական երկիրներ | — | 5 տոլար |
| Եւրոպայի, Ամերիկայի, Գանատայի, Աւստրալիոյ և այլ երկիրներու բաժանորդներէն | 15 տոլար | 30 տոլար |

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1322 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 9 ՆՈՅԵՄԲԵՐ 1995 ՀԱՏԸ ՁԵՌՔԷ 25 Եգ. Դհկ.

عدد رقم ١٣٢٢ - الخميس ٩ نوفمبر ١٩٩٥


## Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՊԱՏՄԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ ՔԱՂԱՔԱՄԱՅՐ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Ս.Դ. Հնչակեան կուսակցութիւնը վերջերս յիշարժան օրեր ապրեցաւ: Արդարեւ Մայր կուսակցութեան՝ հայրենիքի թէ սփիւռքի համայն պատգամաւորները, 108 տարուայ գոյութեան ընթացքին, առաջին անգամ ըլլալով իրենց պատգամաւորական ժողովը գումարեցին քաղաքամայր Երեւանի մէջ: Համագումարը 16-րդն էր, որ տեղի ունեցաւ Հոկտեմբեր 28-30ին, "Արմենիա" հիւրանոցին մէջ:

Առաջին առթիւ տեղի ունեցաւ մամլոյ ասուլիս մը, Երեքշաբթի 24 Հոկտ.ին Ազգային ժողովի շէնքին մէջ, Ս.Դ.Հ.Կ. Հայաստանի կազմակերպութեան նախագահ Եղիա Նաճարեանի և քաղաքական դիւանի անդամ Էռնէստ Սողոմոնեանի կողմէ: Շուրջ երկու տասնեակ լրագրողներ "կը գրոհէին" բազմաթիւ հարցերու տարափով, իսկ ընկերները կը պատասխանէին հանգամանալից և կշռադատուած:

Շաբաթ 28 Հոկտեմբերին, պաշտօնական բացումը կատարուեցաւ 16-րդ համագումարին, Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի հանդիսասրահին մէջ:

Լեփ-լեցուն հսկայ դահլիճը զարդարուած էր պետութեան և կուսակցութեան դրօշներով, "ՀԱՅՐԵՆԻՔՆ ԱՄԷՆ ԻՆՉԻՑ ԳԵՐԻՎԵՐ" կարգախօսի պաստառով: Ներկայ էին պետական անձնաւորութիւններ, յատկապէս Ազգային ժողովի պատգամաւորներ, տարբեր քաղաքական կազմակերպութիւններու ղեկավարներ, 16-րդ համագումարի պատգամաւորներ, տարբեր շրջաններէն եկած կուսակցականներ և համակիրներ:

Նախ հնչեց Հայաստանի Հանրապետութեան և Ս.Դ.Հ.Կ.ի օրհներգները: Ապա բացման խօսքը կատարեց ընկեր Եղիա Նաճարեան, որ բարի գալուստի խօսքէն ետք ողջոյն յղեց, միայն ժամեր առաջ հեռաւոր առաքելութենէն Երեւան վերադարձած Նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանին: Հանգամանալից ելոյթ ունեցաւ Ս.Դ.Հ.Կ.-ի Կեդրոնական վարչութեան ատենապետ ընկեր Վահրին Ճէրէճեանը:

Այնուհետեւ ողջոյնի սրտաբուխ ելոյթներով հանդէս եկան Գիտութիւններու Ազգային Ակադեմիայի ակադեմիկոս-քարտուղար Վլատիմիր Բարխուրդարեան, Հ.Հ.Շ.-ի վարչութեան Նախագահ Տէր Յուսիկ Լազարեան, Հայաստանի Հանրապետական կուսակցութեան Նախագահ Աշոտ Նաւասարդեան, Ռամկավար-Ազատական (Լիպերալ-Դեմոկրատական) կուսակցութեան Նախագահ Վիգէն Խաչատրեան, "Մտաւորական Հայաստան" կազմակերպութեան Նախագահ ակադեմիկոս Թոքմաճեան, Հայաստանի Հայ Յեղափոխական Դաշնակցութիւն կուսակցութեան Նախագահ Յարութիւն Արիստակէսեան և Հայաստանի Եգիպտիներու հոգեւոր առաջնորդ Շէյխ Հասան Հասանեան:

Հանդիսաւոր բացումին յաջորդեց "Արմենիա" հիւրանոցի մեծ դահլիճին մէջ, շուրջ 300 պատգամաւորներու և հիւրերու համար ճաշկերոյթ-ընդունելութիւն մը, ուր արտասանուեցան ողջոյնի խօսքեր:

Ապա համագումարը անցաւ դռնփակ աշխատանքային գործընթացին, որ շարունակուեցաւ երեք օր և ընթացաւ "Արմենիա" հիւրանոցի և "Խնկոյ Ապոր" գրադարանի դահլիճներուն մէջ:

Համագումարը աւարտեցաւ նոր Կեդրոնական Վարչութեան ընտրութեամբ: (Յաջորդիւ՝ պաշտօնական հաղորդագրութիւն):

Փակման հանդիսաւոր արարողութիւնը կատարուեցաւ Հինգշաբթի 2 Նոյեմբերին, Օփերայի թատրոնի մեծ դահլիճին մէջ, որուն ներկայ գտնուեցան աւելի քան 500 անձեր: Տեղի ունեցաւ գեղարուեստական ճոխ յայտագիր մը:

Յաջորդիւ պիտի անդրադառնանք Երեւանի մէջ գումարուած Հ.Մ.Մ.ի Կեդրոնական Ընդհանուր ժողովի մասին, որ տեղի ունեցաւ Նոյեմբեր 2-ին:

ԹՂԹԱԿԻՑ

ՈՒԱՇԻՆԿԹԸՆ

## ՀՀ ԴԵՍՊԱՆՈՒԹԵԱՆ ԲԱՑՈՒՄ

*Ինչպէս անցեալ թիւով հաղորդած էինք, ՄԱԿ-ի 50-ամեակի նուիրուած յատուկ յոբելինական հաւաքէն ետք, ՀՀ նախագահ Լևոն Տէր Պետրոսեանը մեկնեցաւ Ուաշինկթըն, ՀՀ դեսպանութեան բացումին ներկայ գտնուելու համար:*

*Դեսպանութեան շէնքի բացման արարողութեան ժամանակ, ելոյթ ունեցած է նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան և ըսած.*

*" Ես այստեղ համարեայ անծանօթ դէմք չեմ տեսնում: Լինելով Հայաստանի Հանրապետութեան նախագահը, երբ այսքան ծանօթ դէմքեր եմ տեսնում Միացեալ Նահանգներում ես զգում եմ, որ գտնւում եմ իմ քաղաքացիների միջավայրում: Եւ սա իսկապէս դատարկ խօսք չէ: Սա նշանակում է, որ այս դահլիճում հաւաքուած մարդիկ, որոնք, ի հարկէ, մի մասն են ( մեծ մասի հետ ես հանդիպելու եմ երեկոյեան), այն մարդիկն են, որոնք մեր անկախութեան առաջին օրուանից եղել են մեր կողքին և յաւուր պատշաճի իրենց նպաստն են բերել մեր պետութեան կայացման գործին, և վստահ եմ՝ այսուհետեւ էլ պատրաստ են իրենց ողջ կարողութիւնը ներդրել այդ սրբազան նպատակին:*

( Շար. տեսնել էջ Բ. )

( Շար. տեսնել էջ Բ. )

## ԻՍՐԱՅԷԼԻ ՎԱՐՉԱՊԵՏ ԻՍՀԱՔ ՌԱՊԻՆ ՍՊԱՆՆՈՒԱԾ

### ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻ ՅՈՒՂԱՐԿԱՒՈՐՈՒԹԵԱՆ

*Շաբաթ Նոյեմբեր 4-ին , Միջին Արեւելքի խաղաղութեան կողմնակից տասնեակ հազարաւոր իսրայէլացիներ, գլխաւորութեամբ Իսրայէլի վարչապետ՝ Իսհաք Ռապին կը մասնակցէին յատուկ ժողովրդային հաւաքի մը, ուր վարչապետ Իսհաք Ռապին սպաննուեցաւ, ահաբեկիչ Էյկալ Ամայիրի ատրճանակի 3 հարուածներով:*

*Երկուշաբթի, Նոյեմբեր 6ին, ՀՀ նախագահ Լեւոն Տէր-Պետրոսեան և արտաքին գործոց Նախարար Վահան Փափազեան ժամանեցին Իսրայէլ եւ մասնակցեցան աւելի քան յիսուն այլ երկիրներու ղեկավարներու հետ, վարչապետ Իսհաք Ռապինի յուղարկաւորութեան: Եգիպտոսէն նախագահ Մոհամէտ Հոսնի Մուպարաք և արտաքին գործոց նախարար Ամր Մուսա մասնակցեցան այս յուղարկաւորութեան:*

*Իսրայէլի արտաքին գործոց նախարար Շիմոն Փերէզ նշանակուեցաւ Իսրայէլի վարչապետութեան պաշտօնակատար: Ան յայտարարած է թէ Իսրայէլ պիտի շարունակէ խաղաղութեան գործընթացքը:*

*Ահաբեկիչ Էյկալ Ամայիր, անդամ է Իսրայէլական ծայրայեղական խմբակցութեան մը, և ձերբակալուած է, անմիջապէս իր ոճիրէն ետք:*

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանութիւնը տեղեկացնում է, որ Նոյեմբերի 16-ին, ժամը 20.00-ին, դեսպանատանը տեղի կ'ունենայ Հայոց ցեղասպանութիւնը վերապրած մի խումբ Եգիպտահայերի Հայաստանի Հանրապետութեան յատուկ կարգավիճակ շնորհելուն և նրանց Հայաստանի Հանրապետութեան անցնագրեր յանձնելուն նուիրուած հանդիսաւոր երեկոյ:

Հրաւիրւում են բոլոր ցանկացողները:

Հասցէն՝ 12 Լութֆի Հասունա, Տոքքի

## ԿՈՉ ԳԱՀԻՐԷԻ ՀԱՅՈՒԹԵԱՆ

*Եգիպտահայ ազգային հաստատութիւնները, վերջին տասնամեակներուն, յանձնանձուեցան միասնական ուժերով և ընտրուած ազգային իշխանութիւններով, որոնց մաս կազմեցին "ԱՐԵՒ"ի, "ՅՈՒՍԱԲԵՐ"ի և "ՃԱՀԱԿԻՐ"ի շրջանակներուն ներկայացուցիչները:*

*Փոխադարձ յարգանքի հիմամբ յառաջացած համագործակցական աշխատանքը տուաւ իր արդար և ակնկալուած արդիւնքները:*

*Տիրող համերաշխ մթնոլորտը, կը խթանէ մեզ, շարունակել և ամրապնդել իրար հասկացողութեան տրամադրութիւնները, միասնական ճակատով ներկայանալու համար յառաջիկայ 19Նոյեմբեր 1995-ին տեղի ունենալիք Գահիրէի Թեմականի մասնակի ընտրութիւններուն:*

*Մեր առաջադրանքն է, խաղաղ և համերաշխ պայմաններու թոյլատրած կարելիութիւններով, լաւագոյնս կազմակերպել և առաջնորդել թեմիս եկեղեցական, կրթական, կալուածական և վարչական գործերը:*

*Ստորեւ ներկայացուած ընտրելիներու ցանկին իւրաքանչիւր անդամին ծանօթ են բոլորը և քաջատեղեակ՝ անոր ազգանուէր ու գիտակից նուիրուածութեան, ուղղամտութեան և անձնուէր զոհաբերութեան ոգիին:*

*Սիրելի հայրենակիցներ,*

*Կիրակի, 19Նոյեմբեր 1995-ին, կատարեցէք ազգային քաղաքացիական ձեր պարտականութիւնը և քուէատուփ ներկայանալով, համոզումով ու գիտակցութեամբ ձեր քուէները տուէք միասնական ճակատի համագործակցական ցանկին:*

*"ԱՐԵՒ"ի "ՅՈՒՍԱԲԵՐ"ի և "ՃԱՀԱԿԻՐ"ի*
*Միասնական Ճակատ*

### ՄԻԱՍՆԱԿԱՆ ՃԱԿԱՏԻ ԹԵԿՆԱԾՈՒՆԵՐԸ

1.- ԳԱՃԱՆՃԵԱՆ ՍԵՊՈՒՀ, ՎԱՐԴԱՆ
2.- ԳԱՍԱՊԵԱՆ ՏՈՔԹ. ԷՏՈՒԱՐ,ՎՐԷԺ ՏԻԳՐԱՆ
3.- ՋԱՐԴԱՐԵԱՆ ԿԱՐՕ-ԵԴՈՒԱՐԴ, ԳԷՈՐԳ
4.- ԿԱՊԷԵԱՆ ԱՐԹԻՆ, ՆՇԱՆ
5.- ԿԷՎՐԷԿԵԱՆ ՌՈՒԲԷՆ-ՃԱԳԻ, ՎԱՀՐԱՄ
6.- ՄԱՃԼՈՒՄԵԱՆ ՏՈՔԹ. ԳԷՈՐԳ, ԳԵՂԱՄ
7.- ՄԱՐԳԱՐԵԱՆ ԳՐԻԳՈՐ, ՅԱՐՈՒԹԻՒՆ
8.- ՄԵՍՐՈՊԵԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, ՍԱՐԳԻՍ
9.- ՋԷՋՃԷՆԵԱՆ ՄԻՍԱՔ, ՅԱՐՈՒԹԻՒՆ
10.- ՊԱՅՐԱՄԵԱՆ ՏՈՔԹ. ՍՈՒՐԷՆ, ՆԱՐՊԷՅ
11.- ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՕՆՆԻԿ, ԱՐԹՕ ՕՆՆԻԿ
12.- ՍԻՄՈՆԵԱՆ ՃՈՐՃ, ՆՈՒՊԱՐ

ՋԱՀԱԿԻՐ 9 ՆՈՅ. 1995

## ԾՆՈՒՆԴ

*Ուրախութեամբ տեղեկացանք, որ մեր բարեկամներէն՝ Տէր և Տիկին Նորայր և Հիլտա Փիլիպպոսեաններ ամսոյս 1-ին, բախտաւորուած են երկրորդ զաւակով մը զոր անուանակոչած են Սելինա:*

*Այս ուրախ առթիւ ջերմօրէն կը շնորհաւորենք նորածինին ծնողքը և մեծ ծնողները՝ Տէր և Տիկ. Պերճ Փիլիպպոսեանները ու Տէր և Տիկ. Փօլ Բարսեղեանները (Աւստրալիա), մաղթելով արեւշատ և երջանիկ կեանք նորածին դստրիկին:*

## ԸՆՏՐԱԿԱՆ ՑԱՑՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Ընտրական իրաւունք ունեցող Գահիրէաբնակ մեր ազգայիններուն ուշադրութեան կը յանձնենք հետեւեալ կէտերը. –*

*1.– Գահիրէի Թեմականի մասնակի ընտրութիւնները տեղի պիտի ունենան, Կիրակի 19 Նոյեմբեր 1995-ին: Քուէարկութիւնը պիտի սկսի առաւօտեան ժամը 8.-ին և վերջանայ երեկոյեան ժամը 5.-ին:*

*2.– Ընտրող ազգայինները իրենց քուէները կրնան տալ ընտրելու իրաւունք ունեցող ազգայիններու միայն, պայմանաւ, որ անոնք 30 տարին լրացուցած անձեր ըլլան:*

*3.– Պիտի ընտրուին միայն 12 անձեր, որոնց անունները և մականունները պէտք է դրուած ըլլան քուէթուղթին վրայ ու անպայման ներփակուած Առաջնորդարանի կնիքով կնքուած փոքր պահարանին մէջ և գոցուած:*

*4.– Ընտրութեան օրը, ամէն ազգային պարտի ի ձեռին ունենալ անձնական հպատակութեան, անցագրին կամ ինքնութեան թուղթի (պըթաքա շախսիա կամ աիլիյա) ԲՆԱԳԻՐԸ, որպէսզի զայն ներկայացնելէ ետք ստանայ իր թիւը և ընտրական քարթը, ապա քուէարկէ:*

*5.– Հպատակութեան, անցագրի կամ ինքնութեան քարթի լուսատիպ պատճէններով ներկայացողները պիտի չկարենան մուտք գործել Առաջնորդարանի բակէն ներս, ուստի պիտի կորսնցնեն ընտրելու իրաւունքը:*

*6.– Քուէաթուղթին վրայ ընտրելիներու համար որոշեալ թիւէն աւելի գրուած անունները չեղեալ կը համարուին: Նոյնպէս, մէկէ աւելի քուէաթուղթ պարունակող պահարանները ամբողջութեամբ չեղեալ կը համարուին, և կը ջնջուին նաեւ ստորագրուած քուէները:*

*7.– Ընտրութեան օրը, ընտրող ազգայինը, ընտրական տոմարին մէջ իր ստորագրութիւնը դնելէ ետք պիտի մտնէ փոքրիկ միջնասենեակը, ուր ինք, բացարձակ առանձնութեան մէջ պիտի գտնէ կնքուած պահարան և պարապ քուէաթուղթ. ազատօրէն տալու համար իր քուէն:*

**ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ**

## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

*Նկատի ունենալով որ Կիրակի 19 Նոյեմբեր 1995-ին, Գահիրէի Թեմականի մասնակի ընտրութիւնները (12 հոգի) պիտի կատարուին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Տաճարին մէջ պաշտամունք տեղի պիտի չունենայ:*

**Ե. Գ. Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ
Շաբաթ, 2 Դեկտեմբեր 1995

*Կը խնդրուի նկատի ունենալ*

**ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ**

## ԳԱՀԻՐԷԻ ԱՂՔԱՏԱՑ ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ

Շաբաթ, 16 Դեկտեմբեր 1995 երեկոյեան ժամը 9-ին
"ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՍՐԱՀ" ԻՆ ՄԷՋ

**ՏԱՐԵԿԱՆ ԱՒԱՆԴԱԿԱՆ ԱՆՈՒՇԱՊՈՒՐԱՍԵՂԱՆ**

Մանրամասնութիւնները մօտ ապագային
*Բոլոր միութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ*

## Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.)

**ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ**
Ուրբաթ 29 Դեկտեմբեր 1995
**ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՅԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ**
Մանրամասնութիւնները յաջորդիւ
Կը խնդրուի նկատի ունենալ

## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Տիկ. Զապէլ Ռշտունի՝ իր հոգեհարազատ ընկերուհիին՝ յաւէտ Ողբացեալ Մարկրիթ – Պայծառ Յակոբեանի քաղցր յիշատակին կը նուիրէ 30

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ

Մօ. Եդուարդ Յակոբեան իր անմոռանալի կնոջ յաւէտ ողբացեալ Մարկրիթ-Պայծառ Յակոբեանի մահուան հինգերորդ տարելիցին առթիւ, անոր անթառամ ու քաղցր յիշատակին կը նուիրէ.

| | |
|---|---|
| Եկեղեցւոյ Պայծառութեան | 50 |
| Աղքատաց Հոգաբարձութեան | 25 |
| Ս. Եկեղեցւոյ Տիկնանց Խնամակալութեան | 25 |
| Հայ Կարիքի Խաչին | 25 |
| "Այծեմնիկ" Միութեան | 25 |
| Հայ Գեղ. Միութեան | 25 |
| Հ.Ա.Հ. Կոկանեան Սրահին | 25 |
| "Յուսաբեր" Ակումբին | 25 |
| Հայկ. Ընթերցասրահին | 25 |
| "Նիըր Իսթ" Ակումբին | 25 |
| "Յուսաբեր" Մշակ. Ընկ. | 25 |
| Հ.Ա.Հ. Հիմնադրամին | 25 |
| Գալուստեան Ազգ. Վարժ. Ճաշի սեղանին | 25 |
| Նուպարեան Ազգ. Վարժ. Ճաշի սեղանին | 25 |
| Հ.Մ.Ը.Մ. Նուպարին (Հելպ.) | 25 |
| Հ.Մ.Ը.Մ. Արարատի | 25 |
| "Յուսաբեր"ին | 50 |
| "Արեւ"ին | 50 |
| "Ջահակիր"ին | 50 |

(Ստանալ Գահիրէի Ազգային Առաջնորդարանէն)

## ՍՏԱՑՈՒԱԾ ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

Շնորհակալութեամբ ստացանք Պր. ՃՕՐՃ ՊԱՅՐԱՄԵԱՆԷ Ֆրանսայէն, 1995 տարւոյ բաժանորդագինը՝ 150 ֆրանք:

## ԹԱՐԳՄԱՆՉԱՑ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ Հ.Գ.Մ.Ի ՄԷՋ

(Շար. Գ. էջէն)

*դաշնակի ընկերակցութեամբ Տիկ. Նարինէ Օհաննէսեանի, որոնք արժանացան բուռն ծափահարութիւններու:*

*Յայտագրի վերջաւորութեան բեմ հրաւիրուեցաւ հայրենի արուեստագէտ և Գահիրէի սեմֆոնիք նուագախումբի առաջին ջութակահար՝ Կիօրքի Յարութիւնեան, դաշնակի նուագակցութեամբ Վալերի Տիրինի: Ան ջութակի վրայ մեզի հրամցուց քանի մը հայկական մեղեդիներ, որ մեծապէս ոգեւորեց ներկայ հասարակութիւնը: Տաղանդաւոր ջութակահարը զգայուն իր նուագածութեամբ արժանացաւ ներկաներուն ջերմ գնահատանքին:*

*Առիթէն օգտուելով կը շնորհաւորենք Հ.Գ.Մ.ի հիմնադրութեան 75-ամեակը, մաղթելով վարչութեան արդիւնաւէտ գործունէութիւն:*

*Ա. Մ.*

## ՄԱՄՈՒԼԸ ԴՊՐՈՑ Է

## ՄԱՀԱԶԴ

Գահիրէի Ազգային Իշխանութիւնը և Եկեղեցեաց և Գերեզմանատանց Հոգաբարձութիւնը խոր ցաւով կը գուժեն յանկարծական մահը երիցուհի՝

**ԷԼՄԱՍՏ ԴԱՐԲԻՆԵԱՆԻ**
**(ԾՆԵԱԼ ԵՍԱՅԵԱՆ)**

որ տեղի ունեցաւ իր բնակարանին մէջ, Կիրակի 5 Նոյեմբեր 1995-ի երեկոյեան:

Տեղի ունեցաւ Ազգային յուղարկաւորութիւն, Երեքշաբթի կէսօրէ ետք ժամը 3-ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը փոխադրուեցաւ Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Գերեզմանատունը և ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

**ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ**
**Ե.Գ.Մ. ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆ**

*Կիրամուտքը տեղի պիտի ունենայ Շաբաթ 11 Նոյեմբեր 1995-ի երեկոյեան ժամը 5էն 8-ը, Գահիրէի Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ:*

## ՏԽՐՈՒՆԻ

Արժ. Տէր Գալուստ Քհնյ. Դարբինեան, այրի Տիկին Եղիսաբէթ Դարբինեան (Լիբանան), Տէր և Տիկին Սարգիս և Սոնա Լէփէճեան (Յորդանան), Տէր և Տիկին Օհան Լէփէճեան և զաւակը (Յորդանան), այրի Տիկին Մարի Եսայեան և զաւակը՝ Տոքթ. Սեդրակ (Յորդանան), Տէր և Տիկին Վահէ Եսայեան և զաւակունք (Յորդանան), Տէր և Տիկին Վազգէն Եսայեան և զաւակունք (Յորդանան), Տիկին Սօսէ Եսայեան և զաւակունք (Կիպրոս), Տէր և Տիկին Արմենակ Միհրանեան և զաւակունք (Լիբանան), Տէր և Տիկին Սեպուհ Եսայեան և զաւակունք, Տէր և Տիկին Յարութիւն Մըխճեան և զաւակունք (Յորդանան), Տէր և Տիկին Յակոբ Թորանեան և զաւակունք (Յորդանան), Տէր և Տիկին Արմէն Արիստակէսեան (Յորդանան), Օր. Սեդա Եսայեան (Յորդանան), Տէր և Տիկին Թադէոս Եսայեան և զաւակունք (Յորդանան), Տէր և Տիկին Միսաք Դարբինեան և զաւակունք (Հայաստան), ինչպէս նաեւ Եսայեան (Յորդանան և ԱՄՆ), Թորանեան (Հայաստան և ԱՄՆ), Լէփէճեան (Յորդանան և ԱՄՆ), Դարբինեան (Լիբանան և ԱՄՆ), ընտանիքները և համայն սգակիր պարագաները կը ծանուցանեն դառնակսկիծ և յանկարծական մահը իրենց կողակցին, հարսին, քրոջ, մօրաքրոջ, հօրաքրոջ և ազգականին, ողբացեալ երիցուհի՝

**ԷԼՄԱՍՏ ԴԱՐԲԻՆԵԱՆԻ**
**( ԾՆԵԱԼ ԵՍԱՅԵԱՆ )**

որ պատահեցաւ Կիրակի 5 Նոյեմբեր 1995-ի երեկոյեան իր բնակարանին մէջ:

Յուղարկաւորութեան տխուր արարողութիւնը կատարուեցաւ Երեքշաբթի 7 Նոյեմբեր 1995-ին կ.ե. ժամը 3-ին, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը փոխադրուեցաւ Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց Գերեզմանատունը և ամփոփուեցաւ ընտանեկան դամբարանին մէջ:

*Այս տխուր առթիւ "Ջահակիր" և իր շրջանակը իրենց խորազգաց ցաւակցութիւնները կը յայտնեն Արժ. Տէր Գալուստ Քհնյ. Դարբինեանին և հանգուցեալի ընտանեկան բոլոր հարազատներուն ու պարագաներուն:*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Մօ. Եդուարդ Յակոբեան, Տէր և Տիկ. Ժագ Յակոբեան և զաւակունք, Օրք. Անժէլ, Ժագլին և Պր. Պերճ Յակոբեաններ, Տիկին Գեղանոյշ Սարգիսեան, Տէր և Տիկին Գաբրիէլ Արապեան և դուստրը, Տիկին Սրբուհի Սարգիսեան և համայն սգակիր պարագաները, ներկայիս կը ծանուցանեն, թէ Կիրակի 12 Նոյեմբեր 1995ին, Ս. Գրիգոր Լուսաւորիչ Մայր Տաճարին մէջ, յաւարտ Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց սիրեցեալ կնոջ և ազգականին՝ յաւէտ Ողբ.*

**ՄԱՐԿՐԻԹ – ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆԻ**

*մահուան հինգերորդ տարելիցին առթիւ:*

*Հանգուցեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ:*

## ՄԱՐՏԻԿ ԵՒ ՌՈՒԲԷՆ

**ԹԷՐՋԻՊԱՇԵԱՆ ԵՂԲԱՐՔ**
**ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ**

**ՈՍԿԻԻՆ ՕՐՈՒԱՅ ԳԻՆԸ՝**

| | |
|---|---|
| Ոսկեդրամը | Ե.Ո. 303.20 |
| 21 կարատ՝ կրամը | 37.90 |
| 18 կարատ՝ կրամը | 32.50 |

4, Զողէպ փողոց, Ապտէլ Խալէք Սարուաթ, Գահիրէ Հեռ. 3901151

# ՉԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.ع.م - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1323 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 23 ՆՈՅԵՄԲԵՐ 1995 ՀԱՏԸ ՋԵՌ-ՔԷ 25 Եգ. Դեկ. ١٩٩٥ الخميس ٢٣ نوفمبر - ١٣٢٣ عدد رقم


ՀԱՅԱՍՏԱՆ

## ԸՆԿԵՐ ՎԱՀՐԻՃ ՃԵՐԷՃԵԱՆԻ ԲԱՑՄԱՆ ԽՕՍՔԸ Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ 16-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ

Ազգային ժողովի յարգարժան պատգամաւորներ, քաղաքական կուսակցութիւններու և միութիւններու յարգարժան ղեկավարներ,

Սիրելի հիւրեր և ընկերներ,

*Սոցեալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութեան 16-րդ համագումարի, հայրենիքի և սփիւռքի մեր բազմահազար շարքայիններու և ղեկավար մարմիններու, ինչպէս նաեւ կուսակցութեանս հովանաւորութեան ներքոյ ազգային-հասարակական լայն գործունէութիւն ծաւալող կրթական, մշակութային, բարեսիրական և մարզական հաստատութիւններու և միութիւններու անունով կ'ողջունեմ Ձեզ և մեր ուրախութիւնն ու երախտագիտութիւնը կը յայտնեմ Ձեր յարգարժան ներկայութեան համար:*

*Թոյլ տուէք մեր կուսակցութեան խորին շնորհակալութիւնը յայտնել այն բանի համար, որ հնարաւորութիւն ընձեռեցիք այս համագումարը կայացնել հայրենի հողին վրայ՝ Հայաստանի Հանրապետութեան մէջ: Այս պարագան պատմական մեծ նշանակութիւն ունի մեր կուսակցութեան համար, որը իր 108-ամեայ գոյութեան ընթացքին հարկադրուեր է իր նախորդ բոլոր համագումարները կայացնել օտարութեան մէջ ( մերթ լեկալ, մերթ իլլեկալ պայմաններու մէջ) և առաջին անգամն է, որ իր գերագոյն ժողովը կը գումարուի Մայր հայրենիքին մէջ, մեր նորանկախ ազգային պետութեան հովանիին ներքոյ: Մէկ ուրիշ կարեւոր հանգամանք մըն ալ, որ այս համագումարին առաջին անգամ ըլլալով պաշտօնապէս մասնակցութիւն կը բերեն Հայաստանի հանրապետութեան Հնչակեան պատգամաւորներ: Այս երկու աննախընթաց երեւոյթները հնարաւոր չէին դառնար, եթէ յանուն ազգային անկախ պետականութեան հռչակման մեր ժողովրդի երկարատեւ ու հերոսական պայքարը յաղթանակով պսակուած չըլլար:*

*108 տարի առաջ հայ ժողովուրդի տառապակոծ սրտէն ծնունդ առած Հնչակեան կուսակցութիւնը հրապարակ իջաւ հայ ժողովուրդի մեծ երազը՝ Ազատ, Անկախ և Միացեալ Հայաստանի տեսլականը իրականութիւն դարձնելու համար ազգային-ազատագրական պայքարը կազմակերպելու նպատակով, և յանուն մեր բնօրրանի բոլոր հատուածներու, այդ թւում նաեւ Կիլիկիայի օտարի լուծէն ազատագրութեան՝ յանդուգն պայքար տարաւ և յանձն առաւ մեծամեծ զոհողութիւններու, տուաւ մեծաթիւ զոհեր, սակայն երբեք չշեղուեցաւ իր սկզբունքային և իրապաշտ քաղաքականութենէն, երբեւէ չյանձնուեցաւ արկածախնդրութիւններու և նեղկուսակցական շահեր հետապնդելու փորձութեան: Ամբողջովին կիսեց հարազատ ժողովուրդի նակատագիրը, անոր յաղթանակներն ու պարտութիւնները և այսօր ամենայն իրաւամբ բաց ճակատով կանգնած է վերապրած և վերածնուող Հայաստանի ու ժողովուրդի առաջ:*

*Մենք ուրախ ենք, որ մեր ժողովուրդի և անոր անբաժանելի մասնիկ Հնչակեան Կուսակցութեան պայքարի ճամբուն վրայ զոհուած անհամար մարտիրոսներու, եղեռնէն վերապրած համայն հայութեան ազգային մեծ երազը գէթ մասամբ իրականութիւն է դարձած բնօրրանի արեւելեան մէկ հատուածին վրայ, ուր մենք այսօր հպարտութեամբ կ'ողջունենք Ազատ և Անկախ Հայաստանի Հանրապետութեան ազգընտիր նախագահը՝ յանձինս Տիար Լեւոն Տէր Պետրոսեանի, հայրենի եզերքի հերոս պաշտպան ազգային մեր բանակի մարտիկները, օրենսդիր և գործադիր իշխանութիւններու բոլոր ներկայացուցիչները:*

*Սրտագին կ'ողջունենք նաեւ հայրենաբնակ մեր բոլոր քոյրերն և եղբայրները, որոնց սխրանքի ծնունդն է մեր նորանկախ պետութիւնը և որոնց զոհողութեան ոգիի, զրկանքները ըմբռնումով դիմակալելու կարողութեան և օրինապահ կեցուածքի շնորհիւ օրըստօրէ ամրապնդուելու վրայ է այդ պետականութիւնը: Ինչ խօսք, կ'ողջունենք նաեւ հերոսական Արցախի Պետական կազմը, մարտնչող բանակը, քաջարի որդիներն ու դուստրերը, որոնց անընկճելի կամքով ծնունդ առաւ Լեռնային Ղարաբաղի հանրապետութիւնը:*

*Արդար հպարտութեամբ մեր համագումարի ամպիոնէն կը յայտարարեմ, որ Սոցեալ Դեմոկրատ Հնչակեան Կուսակցութիւնը եղաւ և անյողդողդ կը մնայ զօրակիցը 1991 թ. Սեպտեմբերեան ակտի, մեր անկախ և ժողովրդավարական պետութեան ղեկի*

( Շար. տեսնել էջ 4. )

## ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹԻՒՆ ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆ ՄԱՍՆԱԿԻ ԸՆՏՐՈՒԹԻՒՆՆԵՐՈՒՆ ՄԱՍԻՆ

*Եգիպտահայոց Կազմական Կանոնագրի տրամադրութիւններուն համաձայն, և ըստ Եգիպտահայ մամուլին տրուած զանազան պաշտօնական հաղորդագրութիւններու, Կիրակի 19 Նոյեմբեր 1995-ին տեղի ունեցաւ Գահիրէի Ազգային Առաջնորդարանիս մէջ, Թեմական Ժողովի մասնակի, այսինքն 12 դադարեալ անդամներուն տեղ, տասներկու նոր անդամներու ընտրութիւնը:*

*Առաւօտեան ժամը 8.30-ին սկսաւ ընտրական գործողութիւնը, հսկողութեամբ ոստիկանատան բարձրաստիճան սպաներու:*

*Քուէարկութիւնը տեւեց մինչեւ երեկոյեան ժամը 5-ը և առաջին անգամ ըլլալով, քուէարկեց նաեւ իգական սեռը, այս մասին նախապէս հաւանութիւնը ստացուած ըլլալով Ներքին Գործոց Նախարարութեան կրօնական գործոց վարչութեան:*

*Քուէարկութեան արդիւնքը ստացուեցաւ ժամը կ.ե. 8.30-ին և ներքոյիշեալ ազգայինները ընտրուեցան Գահիրէի Թեմական ժողովի անդամներ:*

| | ձայն |
|---|---|
| 1.- ԳԱԶԱՆՃԵԱՆ ՍԵՊՈՒՀ, ՎԱՐԴԱՆ | 208 |
| 2.- ՄԱՐԳԱՐԵԱՆ ԳՐԻԳՈՐ, ՅԱՐՈՒԹԻՒՆ | 207 |
| 3.- ՊԱՅՐԱՄԵԱՆ ՍՈՒՐԷՆ, ՆԱՐՊԷՅ | 207 |
| 4.- ՍԻՄՈՆԵԱՆ ԺՕՐԺ, ՆՈՒՊԱՐ | 207 |
| 5.- ՄԱԶԼՈՒՄԵԱՆ ԳԷՈՐԳ, ԳԵՂԱՄ | 206 |
| 6.- ՄԵՍՐՈՊԵԱՆ ԱՆԴՐԱՆԻԿ, ՍԱՐԳԻՍ | 206 |
| 7.- ՋԷՋՃԷՆԵԱՆ ՄԻՍԱՔ, ՅԱՐՈՒԹԻՒՆ | 206 |
| 8.- ԳԱՍԱՊԵԱՆ ԷՏՈՒԱՐ, ՎՐԷԺ | 205 |
| 9.- ԿԱՊԷԵԱՆ ԱՐԹԻՆ, ՆՇԱՆ | 205 |
| 10.- ՊԸԼԸՔՏԱՆԵԱՆ ՕՆՆԻԿ, ԱՐԹՕ | 204 |
| 11.- ՋԱՐԴԱՐԵԱՆ ԿԱՐՕ-ԷՏՈՒԱՐ, ԳԷՈՐԳ | 201 |
| 12.- ԿԷՎՐԷԿԵԱՆ ՌՈՒԲԷՆ, ՎԱՀՐԱՄ | 199 |

*Քուէարկութեան արդիւնքէն ի յայտ եկաւ որ հետեւեալ ազգայինները ստացան ձայներ ըստ ներքոյիշեալ ցուցակին:*

| | |
|---|---|
| 1- ԲՐՈՒՏԵԱՆ ԳԷՈՐԳ, ԲԻՒԶԱՆԴ | 21 |
| 2- ԶԱՔԱՐԵԱՆ ԹՈՎՄԱՍ, ԽՈՍՐՈՎ | 7 |
| 3- ԽԱՉԵՐԵԱՆ - ՏԷՐՈՒՆԵԱՆ, ԱՐԱՔՍԻ | 5 |
| 4- ԱՍԱՏՈՒՐԵԱՆ ՀԱՅԿ, ԱԶԻԶ | 4 |
| 5- ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ-ՊԱԼԱԵԱՆ ՀԵՐՄԻՆԷ | 2 |
| 6- ԲՐՈՒՏԵԱՆ ԱԲԳԱՐ , ՎԱՀՐԱՄ | 2 |

ԴԻՒԱՆ ԳԱՀԻՐԷԻ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

## ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆԻ ՄԱՍՆԱԿԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ " ՄԻԱՍՆԱԿԱՆ ՃԱԿԱՏ "Ի ՑԱՆԿԸ ԱՄԲՈՂՋՈՒԹԵԱՄԲ ԸՆՏՐՈՒԵՑԱՒ

Ուրախութեամբ կը տեղեկանանք, որ Գահիրէի Թեմական Ժողովի Մասնակի ընտրութիւնները անցան խաղաղ մթնոլորտի մէջ և կանոնաւորութեամբ:

Առաւօտեան ժամը 8.30ին սկսաւ ընտրական գործողութիւնները և ըստ կանոնագրութեան Թեմական Ժողովի կողմէ ընտրուած ընտրական յանձնախումբին երկու անդամներուն՝ ընկ. Պետրոս Մովսէսեանի և Պր. Նորայր Տէօվլէյթեանի վրայ միացան նաև ներկայ քուէարկող, ժողովուրդին կողմէ ընտրուած երկու ազգայիններ՝ յանձին ՊՊ. Վարուժան Կապէեանի և Յակոբ Մարգարեանի:

Թեմիս Առաջնորդ՝ Գերշ. Տ. Զաւէն Արք. Զինչինեան ամբողջ օրը ներկայ գըտնուեցաւ և հետեւեցաւ ընտրութեան կանոնաւորութեանը:

Քուէարկութիւնը վերջ գտաւ կ.ե. ժամը 5ին:

Պետական ներկայացուցիչներուն, Առաջնորդ Սրբազան Հօր, ընտրական յանձնախումբի անդամներուն և թերթիս թղթակիցին ներկայութեան, օրինական ճշդումները կատարուելէ ետք, Առաջնորդ Սրբազան Հայրը կարդաց և նշանակուած չորս ազգայիններու կողմէ արձանագրուեցան քուէներու արդիւնքները:

Ընտրութիւններուն ցուցակներուն արձանագրուած 532 երկսեռ ընտրողներէն, մասնակցեցան միայն 215 հոգի (40.4 %), որոնցմէ 1 հոգի ճերմակ քուէ տուած էր:

( Շար. տեսնել էջ 4 )

## ԲՈՒՌՆ ԵՐԿՐԱՇԱՐԺ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Երեկ, Դշ. 22 Նոյեմբեր 22 1995-ի առաւօտեան ժամը 6.17ին, բուռն երկրաշարժ մը ցնցեց ամբողջ Եգիպտոսը, 6.4 ռիխթըր աստիճանի ուժգնութեամբ,որ տեւեց 70 երկվայրկեան, և 30 քլմ. խորութեամբ ( ծովի տարածքէն) :

Բախտաւաբար 1992 տարւոյ տեղի ունեցած սև երկրաշարժի վնասներուն, այս անգամ միայն 5 զոհեր և 50 վիրաւորեալներ եղած են: Գալով բնակարային վնասներու, մօտաւորապէս 50 շէնքեր, տասնեակ մը դպրոցներ և քանի մը եկեղեցիներ ու մըզկիթներ վնասուած են:

Կը հաղորդուի, թէ ցարդ թեթև շարունակական երկրաշարժներ տեղի կ'ունենան, որոնց թիւը հասած է 200-ի:

Նշենք թէ սոյն երկրաշարժը ոչ միայն ցնցած է Եգիպտոսը, այլ գրեթէ բոլոր միջին Արևելքի երկիրներ, որոնցմէ՝ Յորդանանը, Սէուտական Արաբեան, Իրաքը, Սուրեան, Իսրաէյլը և այլ շրջակայ երկիրներ:

Աշխարհի չորս կողմերէն վշտակցական գիրեր կ'ուղարկուին նախագահ Հոսնի Մուպարագին: Նոյն առթիւ, ՀՀ նախագահ Լևոն Տէր Պետրոսեան ևս ցաւակցական գիր մը յղած է նախագահ Մուպարագի:

## ԱԹՈՄԱԿԱՅԱՆԸ ՍԿՍԱՒ ԵԼԵԿՏԱՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՐՏԱԴՐԵԼ

*Նոյեմբեր 5-ին ժամը 17:30 ից Հայկական ատոմակայանը սկսեց թողարկել էլեկտրաէներգիայի առաջին քիլովատներ: ՀՀ կառավարութեան մամուլի ծառայութիւնից "Նոյեան Տապան" գործակալութեանը յայտնեցին, որ դա տեղի ունեցաւ այն բանից յետոյ, երբ 2-րդ էներգաբլոկի երկու տուրբոգեներատորներից մէկը միացուեց հանրապետութեան էներգահամակարգին:*

*Ներկայումս գեներատորն աշխատում է 50 մեկաուատ հզօրութեամբ, որն, ըստ հզօրութեան իրացման գրաֆիկի, աստիճանաբար կը մեծացուի: Զուգահեռ կատարւում են թրթռակարգաբերման աշխատանքներ:*

*Նոյեմբեր 6-ի կէսօրուայ դրութեամբ Հայկական ատոմակայանի էներժետիկ համակարգին միացած տուրբոգեներ-*

( Շար. տեսնել էջ 4 )

ՋԱՀԱԿԻՐ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

# Ողբ. Մարկրիթ-Պայծառ Յակոբեանի

### ՀԻՆԳԵՐՈՐԴ ՏԱՐԵԼԻՑԻՆ ԱՌԹԻՒ

Կիրակի 12 Նոյ.ի առաւօտեան, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, յաւուր Ս. Պատարագի հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ եկեղեցւոյ "Շնորհալի" երգչախումբի բազմավաստակ մեներգիչ, Ազգային Բարերարուհի և Հայկական Ընթերցասրահի անխոնջ, վեթերան ընկերուհի Ողբ. Մարկրիթ-Պայծառ Յակոբեանի, մահուան 5-րդ տարելիցին առթիւ: Հանգուցեալին յիշատակը յարգողներէն ներկայ էին թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Ս. Արք. Չինչինեան, Արժ. Տ. Գալուստ քհնյ. Դարբինեան, հանգուցեալին կենակիցը՝ Մօ. Եդուարդ Յակոբեան, Ազգային Իշխանութեան անդամներ, հանգամանաւոր ներկայացուցիչներ, զոյգ վարժարաններու ուսուցիչներ, աշակերտներ ինչպէս նաեւ հանգուցեալին գաղափարի ընկեր-ընկերուհիներէն, հարազատներէն և բարեկամներէն անձեր:

Ս. Պատարագի աւարտին, ներկաները հաւաքուեցան Մայր տաճարի բակին մէջ, "ՄԱՐԿՐԻԹ-ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆ" անուան մատենադարանին առջև, ուր նախ Մօ. Յակոբեան զգացուած արտայայտութիւններով, հանդէս եկաւ, դրուատելով հանգուցեալին բարեմասնութիւնները: Ապա սահուն ոճով արտասանեց Անի Պողոսեան, ժագ Յակոբեանի՝ "Հոգին հայկական": Որուն յաջորդեց խմբային հակիրճ արտասանութիւն մը, Նուպարեան վարժարանի աշակերտութեան կողմէ՝ "Հեռագիր"ի անուան տակ:

Հայկական Ընթերցասրահի վարչականներէն՝ ընկեր Պետրոս Գոգորեան խոր ապրումով ասմունքեց ինքնագիր բանաստեղծութիւն մը, ձօնուած Ողբ. Մարկրիթի մահուան 5-րդ տարելիցին: (Ստորեւ կարդալ բանաստեղծութիւնը): Վերջաւորութեան, երախտագիտական խօսքերով արտայայտուեցաւ առաջնորդ Սրբազան Հայրը: Ապա բոլոր ներկաները առաջնորդուեցան Մատենադարանէն ներս, ու հետաքրքրուեցան տեղի արժէքաւոր գիրքերով:

Հուսկ ուրեմն ներկաներէն ոմանք ուղղուեցան դէպի Հելիոպոլսոյ Ամենայն Սրբոց գերեզմանատունը, գլխաւորութեամբ առաջնորդ Սրբազան Հօր:

Յիշատակդ անմե՛ռ մնայ, սիրելի Մարկօ:

*Մ.Պ.*

## ՄԱՐԿՐԻԹ - ՊԱՅԾԱՌ ՅԱԿՈԲԵԱՆԻ ԱՆԹԱՌԱՄ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ապրեցար հոգուով, յոյսերով, երազներով,
Խրատեցիր եռանդով, հանոյքով, սիրելով,
Երգեցիր շարականով, հանդէսով, նուիրումով,
Մեկնեցար զոհուելով, բաժանումով, հաւատքով:

Ճակատագրի դաժան գայլը քեզ կը յօշոտէր,
Ու մարմինդ աւա՛ղ հիւծած, յոգնած, շիջած էր.
Ամէնուրեք թախծոտ աչքերէ արցունք կը հոսէր,
Երբ սրտերուն՝ տխրութեան դաշտը կը տարածուէր:

Առաւ հողը ինչ որ իրն էր, մարմի՛նդ միայն.
Շիրիմիդ վրայ մնաց անունդ մի՛շտ Պայծառ.
Պայծառութեան, վսեմութեան ու բարձրութեան մէջ,
Եղար տիպա՛ր, եղար բարի՛, բարերարուհի:

Բոլորուած այսօր, թանկ յիշատակարանիդ շուրջ,
Մահուանդ հինգերորդ տարելիցի առիթով,
Ձեռքերնիս բարձրացուցած, խնկաբո՛յր աղօթքով,
Կը յի՛շենք քեզ, աչքերնիս սեւեռած դէպ՝ երկինք:

Աղօթքնիս սրտաբուխ թո՛ղ միանայ հոգիիդ,
Հո՛ն, ուր միայն քեզ նման մարգրիտներ կը հանգչին.
Գիտենք, այ՛ո, որ դուն հոն ես, երկնքի մէջ արքայութեան,
Միակ տեղը քեզ յարմար, Մարկրիթ-Պայծառ Յակոբեան:

ՊԵՏՐՈՍ Յ. ԳՈԳՈՐԵԱՆ

## ՈՉ ԵՒՍ Է ԲԱՆԱՍՏԵՂԾ ԼԵՒՈՆ ՍԻՒՐՄԷԼԵԱՆ

3Հոկտեմբեր 1995ին, Էնսինոյի մէջ իր մահկանացուն կնքեց սփիւռքահայ հռչակաւոր բանաստեղծ և գրագէտ Լեւոն Զաւէն Սիւրմէլեան:

Հանգուցեալը ծնած է 1907-ին Տրապիզոն: Շրջանաւարտ է Պոլսոյ Կեդրոնական Վարժարանէն և ապա ուսանած Միացեալ Նահանգներու մէջ: Ան ունի բազմաթիւ գրական ստեղծագործութիւններ հայերէն և անգլերէն լեզուներով: Իր նշանաւոր գործերէն են "Ձեզի կը հարցնեմ Տիկնայք և Պարոնայք", "Սասնայ Ծռեր" դիւցազնավէպը և այլ ժողովրդային հէքեաթներ:

Մեծանուն բանաստեղծ գրագէտին ազգային թաղումը տեղի ունեցաւ Շաբաթ Հոկտեմբերի 7-ին Հոլիվուտի "Ֆորեսթ Լոն" գերեզմանատան մէջ:

## *ՀԱՅԱՍՏԱՆ ՀԱՄԱՀԱՅԿԱԿԱՆ ՀԻՄՆԱԴՐԱՄ*

*Վերջերս գործնական նպատակով Հայաստան էր այցելել արաբ գործարար Մահմուտ Մալիաշը (Սէուտական Արաբիա):*

*Ծանօթանալով "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի գործունէութեանը, Պարոն Մահմուտ Մալիաշը Հիմնադրամի հումանիտար ծրագրերին յատկացրեց 100 հազար ամերիկեան տոլար:*

*"Հայաստան" Համահայկական Հիմնադրամը կոչուած է համախմբելու հայութեանը Հայաստանի և Արցախի զօրացման գործի շուրջ, սակայն Հիմնադրամի ծրագրերն՝ իրենց մարդասիրական բնոյթով խորթ չեն նաեւ օտարազգի մարդկանց:*

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### ՄԱԿ-Ը ԲՆԱԿԱՐԱՆՆԵՐ ԿԸ ԿԱՌՈՒՑԱՆԷ

*ՄԱԿ-ի Երեւանի գրասենեակի SHELTER ծրագրին թելադրանքով, "Գուգարք"ին" հիմնադրամը 10 հսկայ տարածութեամբ տուներ պիտի կառուցանէ նախկին ատրպէյճանական Արճուտ գիւղին մէջ: Բնակարանները օժտուած պիտի ըլլան բոլոր յարմարութիւններով, իսկ իւրաքանչիւրին պիտի յատկացուի 700 քառակուսի մեթր տարածութեամբ պարտէզ մը: Իւրաքանչիւր տուն պիտի պատսպարէ երկու փախստական ընտանիք: Վեց տուներու շինութիւնը արդէն բաւական յառաջացած է: Շինանիւթը տուֆ քարն է, իսկ իւրաքանչիւր տան կառոյցը կարող է մինչեւ 9 աստիճան երկրաշարժի դիմադրել:*

### ԵՐԵՒԱՆՈՒՄ ԿԸ ՋԵՌՈՒՑՈՒԻ ԲՆԱԿԱՐԱՆՆԵՐԻ 40 ՏՈԿՈՍԸ

*Այս ձմեռ մայրաքաղաքի բնակարանային ֆոնտի աւելի քան 40 տոկոսը, ինչպէս նախատեսուած է "Ձմեռ" ծրագրով, Դեկտեմբեր 1ից կը ջեռուցուի,- Արմէնփրէսի թղթակցի հետ զրոյցի ժամանակ հաւաստեց երքաղգործկոմի նախագահի տեղակալ Ռոբերտ Նազարեանը: Այսօրուայ դրութեամբ աւարտուած են ներքին ցանցերի կապիտալ վերանորոգման հիմնական աշխատանքները, ընթանում են հիդրավլիկ փորձարկումները:*

*Ըստ Ռ. Նազարեանի, նախորդի համեմատ այս տարի ջեռուցումը աւելի լաւ կը կազմակերպուի, բնակարաններում ջերմութիւնը կը հասնի 18-20 աստիճանի:*

*Լրիւ փոխուած են փտած կամ անյուսալի խողովակները:*

*Առաջին անգամ կը ջեռուցուի հարաւ-արեւմտեան Բ-3 թաղամասը, որն անցեալ տարի ծրագրից դուրս էր մնացել ելեկտրասնուցման պատճառով:*

*Մայրաքաղաքում կը ջեռուցուի 1466 բնակելի շէնք:*

### ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՐՏԱՀԱՆԱԾ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ՄԷԿ ԵՐՐՈՐԴԸ ԱԴԱՄԱՆԴ ՈՒ ԹԱՆԿԱՐԺԷՔ ՄԵՏԱՂՆԵՐ ԵՆ

*Ռուսական "Էկոնամիչեսկի վիաստի" լրատուական գործակալութիւնը հաղորդում է, որ այս տարի Հայաստանի արտահանումների 36 տոկոսը կազմել են մշակուած - յղկուած ու հում ադամանդը, գոհարեղէնը, ինչպէս նաեւ թանկարժէք մետաղներ:*

*Գործակալութիւնը միաժամանակ նշում է, որ հանրապետութիւնից արտահանուած ապրանքների 14.7 տոկոսը մեքենաներ ու սարքաւորումներ են, 10.2 տոկոսը, ոչ թանկարժէք մետաղներ և դրանցով պատրաստուած իրեր, իսկ 17 տոկոսը՝ գործուածքեղէն: Գալով ներմուծուած ապրանքներին՝ նշւում է, որ դրանց 35 տոկոսը կազմել է սննդեղէնը:*

*Աւտոմեքենաների և զանազան սարքաւորումների ներմուծումները կազմում են ընդհանուր թուի 12 տոկոսը:*

## ՊԱՏՄԱԲԱՆ ՄՈՀԱՄՄԷՏ ՌԷՖԱԱԹ ԷԼ-ԻՄԱՄԻ ՇԱՀԵԿԱՆ ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆԸ

Հինգշաբթի, 2Նոյ.ի երեկոյեան, Գահիրէի համալսարանի գրականութեան կաճառի պատմութեան բաժնի դասախօսասրահին մէջ, առիթը ունեցանք ներկայ գտնուելու շահեկան բանախօսութեան մը, որուն նիւթն էր "ՀԱՅՈՑ ՔՐԻՍՏՈՆԷԱԿԱՆ ԱՌԱՔԵԼՈՒԹԻՒՆԸ ՕՍՄԱՆԵԱՆ ՊԵՏՈՒԹԵԱՆ ՇՐՋԱՆԻՆ": Այս բարդ սակայն կենսական նիւթին շուրջ, մօտաւորապէս ժամ մը լայնօրէն խօսեցաւ եգիպտացի պատմաբան Մոհամմէտ Ռէֆաաթ էլ-Իմամը:

Նախ նշենք թէ երիտասարդ պատմաբանը անցեալ տարի մագիստրոսի աստիճանը ստացած էր, ներկայացնելով իր թէզը՝ "Եգիպտահայութիւնը օրրդ դարուն" նիւթին շուրջ: Ապա առիթէն օգտուելով կը տեղեկացնենք, որ մօտերս լոյս պիտի տեսնէ վերոյիշեալ նիւթին շուրջ տպագրուած ծաւալուն գիրքը: Յիրաւի բծախնդիր և բովանդակալից ուսումնասիրութիւն մը, որուն մասին պիտի անդրադառնանք իր ատենին:

Գալով բանախօսութեան, Մ. Ռէֆաաթ յաջողած էր համադրել տեղեկութիւններ Օսմանեան պետութեան շրջանին՝ հայոց մէջ կաթողիկէ և բողոքական եկեղեցիներու միսիոնարութեանց առաքելութեան մասին: Ան ներկայացուց իր խօսքը, նշելով թէ Օսմանեան Թուրքիոյ շրջանին Բարձր Դուռը քրիստոնեայ տարրերը միլլէթներու դասաւորած էր: Այդ միլլէթներն էին հայերն ու յոյները, որոնց առաջնորդներն էին պատրիարքները:

Ապա անդրադարձաւ կաթողիկէ և բողոքական յարանուանութեանց մուտքը հայոց մէջ: Եւ հետզհետէ մանրամասնութեանց մէջ մտնելով, բանախօսը եզրակացուց իր խօսքը, տեղեկացնելով թէ օղձծին յայտնուեցաւ Ազգային Կանոնագրութիւնը և վաւերացուեցաւ Բարձր Դրան կողմէ, որ երեք տարի ետք ճանչցուեցաւ որպէս Ազգային Սահմանադրութիւն:

Բանախօսութեան աւարտին տեղի ունեցան շահագրգռական հարցումներ: Օրուան բանախօսը ջանաց գոհացում տալ ներկայ պատմութեան ճիւղի համալսարանի դասախօսներուն կողմէ ուղղուած հարցումներուն, որոնց շարքին էին՝ Դր. Ալի Պարաքաթ (Հելուանի պատմութեան ամպիոնի դասախօս), Դր. Ռաուֆ Ապպաս (Գահիրէի և Ամերիկեան համալսարանի պատմութեան դասախօս) և Դր. Մոհամմէտ Աֆիֆի (Գահիրէի համալսարանի պատմութեան ամպիոնի դասախօս):

Սակայն վերջին հարցումին Մ. Ռէֆաաթ փափաքեցաւ, որ պատասխանէ համայնքիս ծանօթ ազգային Պր. Պերճ Թէրզեան: Ան իր կարգին հմտօրէն պատասխանելով, կարողացաւ յաւելեալ լուսաբանութիւններ տալ հարցադրողին:

Գալով եգիպտահայութեան, ներկայ էին միայն ութ համայնքի հանգամանաւոր ներկայացուցիչներ:

Նորանոր յաջողութիւններ կը մաղթենք ջանասէր երիտասարդ պատմաբան Մոհամմէտ Ռէֆաաթ էլ-Իմամի:

## ՈՒԽՏԱԳՆԱՑՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ ՋԱԿԱԶԻԿԻ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻՆ

*Նախորդ տարիներուն նման այս տարի ևս տեղի ունեցաւ Աւանդական Ուխտագնացութիւնը մասնակցութեամբ Գահիրէի և Աղեքսանդրիոյ հայ հաւատացեալ ուխտաւորներուն, Կիրակի 29 Հոկտ. 1995-ին:*

*Օրուայ պատարագիչն էր Տէր Գալուստ քհնյ. Դարբինեան իսկ Աղեքսանդրիայէն կը մասնակցէր Տէր Գրիգոր քհնյ. Մուրատեան:*

*Պատարագիչ Տէր Հայրը խօսեցաւ յաւուր պատշաճի քարոզ մը Գիւտ Խաչի տօնին առթիւ և գնահատեց ապա օրհնեց հաւատացեալ ուխտաւորներուն, իրենց հաւատքին և աւանդութեան հետեւողականութեան համար:*

*Պատարագի աւարտին եկեղեցւոյ բարերար Արամ Պէյ Կամսարականի և ընտանիքի ննջեցեալներուն, նաև Նիբր Իսթ հայկական ակումբի հին և նոր ննջեցեալներու հոգւոյն ի հանգիստ կատարեց հոգեհանգստեան պաշտօնը:*

*Ապա մնացեալ օրը ուխտաւորները անցուցին Պորկ էլ Մնուֆիէի զբօսավայրի գեղատեսիլ պարտէզին մէջ, զուարճանալով և ճաշակելով Նիբր Իսթի Տիկնանց յանձնախումբի պատրաստած համեղ քէօֆթէ-քէպապը:*

*Ուխտը և վարձքը կատար բոլորին:*

*ԹՂԹԱԿԻՑ*

Աղեքսանդրիա *ՄԻՆԱՍ ԱԻԱԳ ՍՐԿ. ՊԱՆՏՈՅԵԱՆ.*

## Մ Ա Ր Զ Ա Կ Ա Ն

**ՖՈՒԹՊՈԼ**

### Հ.Մ.Մ. ՊՈՍԹԸՆ ԿԸ ՀԱՍՆԻ ՄԱՍԷՋՈՒՍԷԹՍ ՆԱՀԱՆԳԻ ԱՒԱՐՏԱԿԱՆ ՄՐՑՈՒՄԻՆ

Հ.Մ.Մ. Պոսթըն շարունակելով անցեալ խաղաշրջանին արձանագրած յաջողութիւնները տիրացաւ Մասէջուսէթս նահանգի բաժակին և ապա հասաւ Ամերիկայի բաց առաջնութեան 1/8 եզրափակիչ հանգրուանին: Այս տարի խումբը կը գտնուի լաւ մակարդակի վրայ և արդէն իրաւունք ստացած է իր տիտղոսը պաշտպանելու Նոյեմբեր 26-ին տեղի ունենալիք Տէլուէր նահանգի բաժակի աւարտական մրցումին:

Հ.Մ.Մ. յաջորդաբար պարտութեան մատնեց նախ Greek Sportsman-ի կազմը 7-1արդիւնքով և ապա կիսաւարտականին Milton Riesina-ի կազմէն 1-0 արդիւնքով:

ՋԱՀԱԿԻՐ

23 ՆՈՅ. 1995

# ԸՆԿԵՐ ՎԱՀՐԻՃ ՃԵՐԷՃԵԱՆԻ ԲԱՑՄԱՆ ԽՕՍՔԸ ...

( Շար. Ա. էջէն )

մօտ կանգնած օրինական իշխանութիւններու, անոնց ներքին ու արտաքին ազգաշահ բոլոր ձեռնարկումներուն: Մեր կուսակցութիւնը մշտապէս եղած է իրեն ծնունդ տուած ժողովուրդի կողքին, անոր պայքարի բոլոր հանգրուաններուն: Մեր կուսակցութիւնը ոչ մէկ առեն և ոչ մէկ տեղ չէ ծառայած օտար ծրագիրներու և շահերու՝ հակառակ իր դէմ նիւթուած սադրանքներուն, նենշումներուն և հալածանքներուն: Եւ Հնչակեան կուսակցութիւնը չի կրնար հասկնալ կամ ընդունիլ, որ հայկական ըլլալ յաւակնող որեւէ կուսակցութիւն կամ կազմակերպութիւն հակադրուի ազգային պետականութեան և անօրէն պայքար մղէ այդ պետականութեան օրինական ղեկավարութեան դէմ, որը աշխարհաքաղաքական, ռազմական, տնտեսական և ընկերային դժուարագոյն պայմաններու մէջ ժողովուրդին կը յաջողի առաջնորդել անկախութեան, ազատութեան և ինքնիշխանութեան քարքարուտ ուղիին վրայէն, ամուր հիմքերու վրայ դնել մեր ազգային անվտանգութիւնը, անվտանգ և արժանապատիւ գոյավիճակով ապահովել Արցախի մեր եղբայրներուն:

Մեր կուսակցութեան ներկայ համագումարը խնդիր չունի վերանայելու իր միակ ճիշդ, միակ ազգաշահ դիրքորոշումները: Սակայն և այնպէս մեր համագումարի օրակարգի վրայ են մեր ժողովուրդի կեանքի ներկայ պահի համար շատ կարեւոր այնպիսի հիմնախնդիրներ, ինչպիսիք են հայրենիք-սփիւռք փոխյարաբերութիւններն ու համագործակցութեան ամրապնդման ուղիները, Հայաստանին և նրա թանկագին մասնիկ Արցախին օժանդակութեան և նորանկախ պետականութեան շուրջ համախմբման շարժման ուժգնացումը, հայ եկեղեցու տագնապի լուծման հեռանկարները եւայլն:

Կարեւոր կը համարեմ շեշտել, որ մեր կուսակցութեան 15-րդ համագումարի (Օգոստոս 1991) թուականէն ասդին ամբողջովին նոր իրավիճակ է ստեղծուած Հայաստանէն ներս թէ սփիւռքի տարածքին: 20-րդ դարու վերջին տասնամեակին, ի վերջոյ նախախնամութիւնը բարեհաճեցաւ, որոշ չափով, ըլլալ բարեգակամ բազմաչարչար հայ ժողովուրդին հանդէպ ու հայը իր մայր հողի, մէկ մասին վրայ կրցաւ հաստատել իր անկախ պետութիւնը՝ Հայաստանի Հանրապետութիւնը: Ցաւերով ծնած մանուկ մըն է ան որը առողջ մեծնալու, զօրանալու ու հայուն "մայր" դառնալու համար կարիքը ունի ընդհանուրիս գուրգուրանքին: Շատ մեծ են անոր սպառնացող վտանգները, բիւր են անոր առջև ծառայող դժուարութիւնները: Հայ մարդուն կը մնայ դիմակայել այդ վտանգները և հարթել այդ դժուարութիւնները: Հայը ինք պիտի վերաշինէ իր քանդուած տունը:

Միւս կողմէն կայ սփիւռքը իր բազմաթիւ գաղութներով, հաստատութիւններով, համայնքներով, կուսակցութիւններով ու միութիւններով, իրարամերժ կազմակերպութիւններով: Շատ կարեւոր հարց է սփիւռքի մէջ գոյութիւն ունեցող շերտաւորումներու բացասական անդրադարձը ազգային ծրագիրներու իրագործման ճամբուն վրայ: Պարսկահայ, Պոլսահայ, Լիբանո-Սուրիահայ, Ամերիկահայ և վերջերս ալ այսպէս կոչուած Հայաստանցի հայ իրարմէ հեռու, յաճախ իրար ժխտող համայնքներ են որոնք նոյն ազգին պատկանելով հանդերձ իրարու հակադրուած հաւաքականութիւններ են: Բոլորն ալ սակայն աւելի քան եօթանասուն տարիներէ ի վեր սփիւռքի այլազան պայմաններու մէջ կը պայքարին հայ մնալու և հայուն պատիւը բարձր պահելու համար: Անհատական թէ հաւաքական ջանքերով շահուած հսկայ բոթանսիէլ կարողութիւններով ու կարելիութիւններով անոնք կրնան մեծապէս օժանդակել հայրենիքի վերելքին եթէ կարելի ըլլայ կազմակերպել, մէկ յայտարարի տակ բերել ու canalise ընել այդ կարելիութիւնները: Կարեւոր խնդիր է սփիւռքը հայրենիքին շուրջ համախմբելու հարցը:

Այդ, կրնայ ընել միայն Հայրենիքը և հայրենի պետութիւնը: Իրարմէ հեռու զարգացող համայնքներն ու կազմակերպութիւնները իրար մօտեցնող, իրար միացնող canaliser-ը կրնայ ըլլալ հայրենիքը: Հետեւաբար մեր մաղթանքն է որ Հայաստանի Հանրապետութեան կառավարութիւնը սկսի ծրագրեալ ձեւով դառնալ ամբողջ հայութեան կառավարութիւն ու վերցնէ հայութիւնը միացնող, հայրենիքին շուրջ համախմբողի դերը: Նման ազգօգուտ նախաձեռնութիւններու պարագային ան միշտ իր կողքին պիտի ունենայ Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը:

Մենք կը հաւատիացնենք Ձեզ որ 16-րդ համագումարի մասնակցող մեր պատգամաւոր բոլոր ընկերները իրենց կուսակցական բարձր գիտակցութեամբ քաղաքական փորձառութեամբ, ազգային նուիրեալ ոգիով պիտի յաջողին որոնել ու գտնել լուծումներ, առնել ճիշդ որոշումներ և ընել օգտաշատ կարգադրութիւններ ի փառս ազգիս և հայրենիքիս:

Հայրենիք և սփիւռք մեր ազգային Արծիւի երկու զօրաւոր թեւերը պէտք է ըլլան հայրենիքն ու ազգը հասցնելու բարձունքներու:

Փառք ու պատիւ հայրենիքի ազատագրութեան համար զոհուած բիւրաւոր նահատակներուն:

Փառք ու պատիւ Ազատ, Անկախ Հայաստանը կերտող ժողովուրդին ու անոր ղեկավարութեան:

Փառք ու պատիւ սփիւռքի մէջ հայ ժողովուրդին ու հայրենիքին համար նուիրուած անձերուն ու ղեկավարներուն:

Կեցցէ 108-ամեայ ու հայրենանուէր Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը:

Կեցցէ Արցախի մարտնչող ժողովուրդը:

Կեցցէ Հայաստանի Հանրապետութիւնը:

## "ՋԱՀԱԿԻՐ"ԻՆ

Ողբ. Սարգիս Պալեանի (Մոնթրէալ) մահուան առաջին տարելիցին առթիւ, անոր քաղցր յիշատակին, Տիկ. Անժէլ Գասապեան կը նուիրէ 15

# ԴԱՇՆԱԿԱՀԱՐ ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

( Շար. Գ. էջէն )

*Փօլ Տիւքայի աշխարկու մի պէմոլ մինոր սոնաթը: Աւագեանին կողմէ խիզախութիւն էր զայն ձեռնարկելը: Ծանրակշիռ նուաքարչութիւն մըն էր:*

*Այս ստեղծագործութիւնը արժանի է ուսնկնդրութեան: Ան աներկբայօրէն արժանացաւ ուշադրութեան արժանի նուագածութեան: Աւագեան ունի ձայնափոխման մեծ կարողութիւններ՝ որոնք բոլորն ալ կարողացաւ արտայայտել: Շատ լաւ Տիւքա, սկսինք, - կը թուէր թէ Աւագեան կ'ըսէր՝ մինչ կը ոլորէր չափիկին թեւերը: Եւ ան սկսաւ մեզ յափշտակել: Մինչ կը տարուբերուէինք դաշնակի փոթորկոտ ալիքներուն վրայ, կը յիշէինք Կերշուինի երաժշտութիւնը:*

*Խորտակիչ ստեղծագործութիւն մըն է սակայն փառքով կը պսակէ անոնց որոնք կարող են հասնիլ իր բարձունքները:*

*"ԱԼ-ԱՀՐԱՄ ՈՒԻՔԼԻ"*

*Թարգմ. ՄԱՆՈՒԷԼ ԳՐԻԳՈՐԵԱՆ*

# ԳԱՀԻՐԷԻ ԹԵՄԱԿԱՆԻ ՄԱՍՆԱԿԻ ԸՆՏՐՈՒԹԵԱՆՑ

( Շար. Ա. էջէն )

*" Արև"ի, "Յուսաբեր"ի և "Ջահակիր"ի շրջանակներու համաձայնութեամբ ստեղծուած "Միասնական Ճակատի" բոլոր թեկնածուները՝ թեւով 12 հոգի, մեծամասնութեամբ ընտրուեցան:*

*Խմբագրութիւնս կը շնորհաւորէ վերընտրեալ 10 և նորընտիր 2 Թեմական Ժողովի անդամները և կը մաղթէ որ համագործական ոգին միշտ տիրէ իրենց միջև ի նպաստ համայնքիս բարօրութեան և խաղաղութեան, որպէսզի ազգային գործերը մատակարարուին յաջողութեամբ:*

Ա.Մ.

# ԱԹՈՄԱԿԱՅԱՆԸ ՍԿՍԱՒ ԵԼԵԿՏԱՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԱՐՏԱԴՐԵԼ

( Շար. Ա. էջէն )

*րատորն աշխատում էր 80 մեկաւատ հզօրութեամբ:*

*Ինչպէս Արմէնփրէսի թղթակցին ասաց ՀԱԷԿ-ի տնօրէն Սուրէն Ազատեանը, իր ծրագրային հզօրութեանը՝ 400 մեկաւատ, կայանը կը հասնի առաջիկայ մէկ ամսուայ ընթացքում: Մինչ այդ կը շահագործուի նաեւ երկրորդ տուրբոգեներատորը, կը շարունակուեն անվտանգութեան մեծացմանն ուղղուած աշխատանքները:*

*Ըստ Սուրէն Ազատեանի, ներկայ 80 մեկաւատ հզօրութիւնը սպառման առումով նշանակելի չէ, սակայն հարկ է հաշուի առնել, որ նման քանակի ելեկտրաէներժիա ստանալու համար ջերմակայանները ժամում սպառում են 20 թոննա մազութ:*

# ՄԱՀԱԶԴ

Հեռաձայնային հաղորդակցութեամբ, խոր ցաւով տեղեկացանք մահը ազգային հասարակական և Հնչակեան կուսակցական ղեկավար՝

## ԸՆԿԵՐ ՏՈՔԹ. ԱՍԱՏՈՒՐ ԿԻՒԼՎԱՐԴԵԱՆԻ

որ տեղի ունեցած է Գալիֆորնիոյ՝ Լոս Անճելըս քաղաքին մէջ, Երեքշաբթի 17 Հոկտեմբեր 1995-ին, յանկարծական մահով: Իսկ յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Շաբաթ 21 Հոկտեմբերին:

Ողբացեալը Լիբանանի քաղաքացիական տագնապներուն բերմամբ, ընտանեօք Միաց. Նահանգներ հաստատուած էր: Ան իր սերնդակիցներուն մէջ այն սակաւաթիւներէն էր, որոնք բարձրագոյն կրթութիւն ստացած են: Արդարեւ յիշեալը Ամերիկեան համալսարանէն ստացած էր "Էքոնոմի Փոլիթիք"ի մէջ տոքթորական վկայական: Բացի իր դեղագործական վկայականէն, ըստ որում Պէյրութի հայաշատ կեդրոններէն մէկուն մէջ ունէր "Ideal" դեղարանը և կը զբաղուէր դեղերու մեծաքանակ ներածման գործով: Հանգուցեալ ընկերը տարիներ շարունակ Լիբանանի և ապա Միացեալ Նահանգներու մէջ եղած է Ս.Դ.Հ.Կ.-ի Վարիչ մարմիններու անդամ և Հ.Մ.Մ.-ի ատենապետ: Վարած է նաև կրթական, մշակութային և հասարակական բեղուն գործունէութիւն:

Հանգուցեալին մահով կ'անհետանայ իր սերնդակիցներուն մէջ, իր զոհողութեան ոգիով ինքզինք նշանաւորած և իր պատկանած կազմակերպութեան հիանալի անդամներէն մին:

*"Ջահակիր" իր զգացուած ցաւակցութիւնները կը յայտնէ հանգուցեալին այրիին՝ Տիկին Սոնիային, զաւակներուն, հարազատներու ինչպէս նաև ընտանեկան բոլոր պարագաներուն:*

## ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳ. ՎԱՐԺԱՐԱՆ

Շաբաթ 2 Դեկտեմբեր 1995, կ.ե. ժամը 7.30 -ին

### ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՀԱՆԴԷՍ

ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ

ԳԵՐՇ. Տ. ԶԱՒԷՆ Ս. ԱՐՔ. ՉԻՆՉԻՆԵԱՆԻ

Բարեխնամ Առաջնորդ Եգիպտոսի Հայոց

ՆԱԽԱԳԱՀՈՒԹԵԱՄԲ

ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ ԱՆԴՐԱՆԻԿ ՄԵՍՐՈՊԵԱՆԻ

Գեղարուեստական Ճոխ Յայտագիր

(1991-92), (1992-93), (1993-94) և (1994-95) տարեշրջաններու շրջանաւարտները պիտի ստանան իրենց վկայականները:

*Հայ հասարակութիւնը սիրով հրաւիրուած է*

ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆ

## Հ.Մ.Ը.Մ. ՆՈՒՊԱՐ (ԱՂԵՔՍ.)

### ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՒ ԿԱՅՏԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Ուրբաթ 29 Դեկտեմբեր 1995

ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱՅԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

Մանրամասնութիւնները յաջորդիւ
Կը խնդրուի նկատի ունենալ

# ԻՆՉՊԷՍ ՔՆԱՆԱԼ ԵՒ ԵՐԲ

( Շար. Գ. էջէն )

15.- Գիշեր բարի ըսէ ընտանիքի անդամներուդ, համբոյր բաժնէ բոլորին ու խաչ մը հանէ և շնորհակալ եղիր Աստուծոյ, որ ողջ մնացիր և բարիքներ վայելեցիր:

16.- Եթէ գէշ բան մըն ալ պատահեցաւ, և կամ եթէ մէկուն սիրտը կոտրեցիր՝ ներողութիւն խնդրէ և խոստացիր յաջորդ օրը աւելի լաւ ըլլալ:

17.- Շատ գովելի սովորութիւն է, անկողին չմտած քանի մը էջ կարդալ օգտակար գիրքէ մը և այդ մտածողութեամբ քնանալ: Ոմանք Ս. Գիրք կամ բարոյական էջեր կը կարդան: Մեծ մարդիկ, անկողնին մէջ աչքէ կ'անցնեն օրուան բոլոր դէպքերը և իրենց ըրած սխալները, և սրբագրել կը ջանան:

18.- Տեսած երազներդ արար աշխարհին մի՛ պատմեր, որովհետեւ անոնք քու ներաշխարհիդ սրբազան գաղտնիքները կը մատնեն:

( ԱՐԱՐԱՏ ) Պատրաստեց՝ ԾՈՎԻՆԱՐ



دار شركة للطباعة - رقم إيداع دار الكتب ٨٠٥

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهاكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1324 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 7 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1995 ՀԱՏԸ ՁԵՌ-ՔԷ 25 Եգ. Դհկ. — ١٩٩٥ عدد رقم ١٣٢٤ - الخميس ٧ ديسمبر


## Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ Ժ.Զ. ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը իր Ժ.Զ. ընդհանուր Համագումարը կայացուց քաղաքամայր Երեւանի մէջ՝ 27Հոկտեմբերէն, 30 Հոկտեմբեր 1995՝ մասնակցութեամբ Հայկական Սփիւռքի տարածքին գործող 16 շրջաններէ և Հայաստանէն 90 պատգամաւորներու:

Հայկական Սփիւռքի ազգային, քաղաքական և մշակութային կեանքէն ներս իր կենսունակ գոյութեամբ և գործունէութեամբ հայ ժողովուրդի անիրաւուած դատին, իրաւունքներու պաշտպանութեան և գոյապահպանման ամբողջական յանձնառութեամբ ծառայող Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը իր Ժ.Զ. Համագումարով հետեւողականօրէն հաստատեց իր 108-ամեայ արմատներէն սնուելու իրողութիւնը և գոհունակութեամբ ողջունեց պատմական այն եղելութիւնը, որ առաջին անգամ ըլլալով իր համագումարը կը կայացնէր նորանկախ և ազատ հայրենիքէն ներս, հայրենիք-Սփիւռք ճշմարիտ միասնութիւնը խորհրդանշող և ամրապնդող մթնոլորտի մը մէջ:

Պատմական այս հանգամանքը յատուկ կերպով ընդգծուեցաւ Ժ.Զ. Համագումարի պաշտօնական բացման նիստին, - Հայաստանի Հանրապետութեան Ակադեմիայի սրահին մէջ-, ի ներկայութեան բազմահարիւր հրաւիրեալներու՝ պետական դէմքեր, մտաւորականներ, հասարակական կազմակերպութիւններու և կուսակցութիւններու ներկայացուցիչներ: Արտասահմանէն ստացուած ողջոյնի գիրերն ու կազմակերպութիւններու կողմէ խօսք առնողներու ելոյթները ողջմտօրէն նշեցին Հնչակեան Կուսակցութեան Պատմական առաքելութեան անհրաժեշտութիւնը, իրեն վերապահուած մասնայատուկ դերին ընդգծումով՝ հայրենիքէն ներս թէ ի Սփիւռս աշխարհի:

Ժ.Զ. Համագումարը, որ կը զուգադիպէր անկախ իքնիշխան Հայաստանի անկախութեան քառամեայ տարեդարձի լրումին վերահաստատելով իր արդէն որդեգրած կեցուածքն ու քաղաքականութիւնը Հայաստանի անկախ Հանրապետութեան կողքին և համակողմանի քննարկման ենթարկելով հայրենիքի իրավիճակն ու ձեռք բերուած արդիւնքները, մէկ հայրենիք, մէկ ժողովուրդ սկզբունքին նկատմամբ հետեւողական ուղեգի-ծով, գտաւ որ՝ Հայաստան ամրապնդելով իր անկախութիւնը, արտաքին քաղաքականութեան մէջ արձանագրած է նշանակալից յաջողութիւններ Միջ-Պետական յարաբերութիւններու և ներքին ապահովութիւնը հաստատելու մարզերէն ներս: Առաւել քան անհրաժեշտութիւն է, հատուածականէն վեր համահայկական մտածողութեամբ, Հայաստանի պետականութեան կայացումն ու հզօրացումը՝ ամբողջական Հայաստանի երազով:

Այս տեսակէտէն մեկնելով խիստ կարեւորութեամբ վեր առաւ ամբողջական հայութեան համախմբումի հրամայականը հայրենիքի և պետականութեան շուրջ՝ գիտական, տնտեսական, քաղաքական և մտաւորական ուժերու և կարելիութիւններու դէպի Հայաստան ուղղուածութեամբ և լարումով՝ ի խնդիր հայրենիքի զօրացման, բարգաւաճման և ժողովուրդի բարօրութեան: Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Ժ.Զ. Համագումարը ամբողջական հայութեան համար առաջադրեց, - առանց անտեսելու Սփիւռքահայ ազգապահպանման կառոյցներուն գոյատեւման հրամայականը, - դառնալ զօրացուցիչ և բաղկացուցիչ գործօնը հայրենական և հայրենաշինական պայքարին:

Հակառակ ի գործ դրուած դրական ճիգերուն և կատարուած նախաձեռնութիւններուն, շուկայական դրոյթի ներկայ դրութեամբ Հայաստանի տնտեսա-ընկերային տագնապը կը շարունակուի, որմէ տուժողներն են ժողովուրդն ու մտաւորականութիւնը: Կենսական պահանջք ու անհրաժեշտութիւն է ժողովուրդի կենսամակարդակի բարելաւումն ու մտաւորականութեան համար բարւօք պայմաններու ստեղծումը՝ հայրենիքի ապագան հիմնաւորելու աջադրութեամբ: Այս կերպով և այս ճամբով է, որ առաջքը կ'առնուի հետզհետէ մտահոգիչ երեւոյթ դարձած արտագաղթի տխուր և պախարակելի երեւոյթին՝ ժողովրդական և մտաւորական խաւերէն հաւասարապէս: Ս.Դ. Հնչակեան Կուսակցութեան Ժ.Զ. Համագումարը Սփիւռքի օժանդակութեան անհրաժեշտութիւնը շեշտելով հանդերձ, հայրենիքի շրջափակումի և պատերազմական պայմաններու դժուար կացութեան մէջ, - դատապարտումի իր խօսքը ուղղեց արտագաղթի ապազգային մտայնութեան և հոսանքին դէմ, որ ճգնաժամային տագնապալից այս օրերուն, հայրենիքի վէրքը խորացնելու կը ծառայէ: Այնպէս, ինչպէս այն բոլոր անժամանակ

( Շար. տեսնել էջ Բ. )

## ՀՀ ԿԱՑՈՒԹԵԱՆ ՅԱՏՈՒԿ ԿԱՐԳԱՎԻՃԱԿԻ ԱՌԱՋԻՆ ԱՆՁՆԱԳՐԵՐԸ ՅԱՆՁՆՈՒԵՑԱՆ ԵԳԻՊՏՈՍԻ ՄԷՋ

Նոյեմբեր 16-ին Գահիրէում Հայաստանի Հանրապետութեան դեսպանատանը, տեղի ունեցաւ Հայոց ցեղասպանութիւնը վերապրած երեք եգիպտահայերի ՀՀ կացութեան յատուկ կարգավիճակի անձնագրերի յանձնման հանդիսաւոր արարողութիւնը: Մկրտիչ Բէմպէճեանը, Յովհաննէս Սարգիսեանը և Պետրոս Ոսկերիչեանը դարձան այն առաջին եգիպտահայերը, որոնց Հայոց Ցեղասպանութիւնը վերապրած հայերին պետական աջակցութիւն ցուցաբերելու մասին ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանի հրամանագրի համաձայն շնորհուեց Հայաստանի Հանրապետութեան յատուկ անձնագիր:

Նրանց ջերմօրէն շնորհաւորեց և անձնագրերը յանձնեց Եգիպտոսում ՀՀ արտակարգ և լիազօր դեսպան է. Նալպանտեանը: Այնուհետեւ Մեծ Եղեռնի արհաւիրքներով անցած այդ երեք տարեց անձինք երախտիքի խօսքեր ասացին՝ ուղղուած ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեանին և դեսպանութեանը՝ հայկական անձնագիր ունենալու իրենց վաղեմի նուիրական իղձը բէկուզ կեանքի մայրամուտին իրականութիւն դարձնելու համար:

Հանդիսութեանը ներկայ էին Եգիպտոսի Թեմի առաջնորդ Զաւէն Արք. Չինչինեանը, Թեմական ժողովի նախագահ Անդրանիկ Մեսրոպեանը, համայնքի մի քանի տասնեակ ներկայացուցիչներ: Արարողութիւնը մեծ խանդավառութիւն առաջացրեց ներկաների մօտ և շատերը ոգեւորուած տեղում դիմումնագրեր լրացրեցին ՀՀ յատուկ կարգավիճակ ստանալու համար:

( Հանդիսութեան յիշատակի նկարներ՝ տեսնել էջ 3 )

**ՀԱՅԱՍՏԱՆ**

## ՍԱՀՄԱՆԱՄԵՐՁ ՇՐՋԱՆՆԵՐՈՒ ՌՄԲԱԿՈԾՈՒՄՆԵՐԸ ԿԸ ՇԱՐՈՒՆԱԿՈՒԻՆ

Անցեալ քանի մը օրերու ընդորրէ մը ետք, Ատրպէյճանական բանակը վերըսկսած է ռմբակոծել Հայաստանի հիւսիս-արեւելեան սահմանը, լայն տրամաչափի թնդանօթներով: Յարձակումի թիրախ հանդիսացած են Տաւուշի շրջանի Այգեձոր գիւղը և Իջեւանի շրջանի Վազաշէն գիւղը: Զոհեր և վնասներ կան: Հայկական կողմի հակադարձութենէն ետք, թշնամին դադրեցուցած է կրակը:

## ՆՈՐԱ ԱՐՄԱՆԻ ԳԱՀԻՐԷԻ ՄԷՋ

Նախկին Եգիպտատայ, այժմ Ֆրանսահայ, ծանօթ դերասանուհի, ֆիլմերու արտադրիչ՝ Նորա Արմանի Բաբազեան, անցեալ Կիրակի 2 Դեկտ.ին Գահիրէ ժամանած է, յատուկ հրաւէրովը Գահիրէի Ֆիլմերու Միջազգային Փառատօնին նախագահ՝ Սաատ Էլ Տին Ուահպայի:

Ուրախ ենք յայտնելու թէ այս տարի Գահիրէի Ֆիլմերու Միջազգային 19-րդ Փառատօնին կը ցուցադրուի Նորա Արմանիի արտադրած "Վերջին Կայանը"՝ հայկական ֆիլմը, որուն գլխաւոր դերերը կը կատարեն ինք և իր ամուսինը՝ անուանի դերասան-բեմադրիչ Ժիրայր Բաբազեան:

Անցեալ Երեքշաբթի երեկոյան, Ֆիլմի պաշտօնական ցուցադրութիւնը կատարուեցաւ Գահիրէի Ամերիկեան համալսարանի "Իուըրթ Մեմորեալ Հոլ"ի մէջ, ի ներկայութեան հայ և օտարազգի հասարակութեան: Նաև ցուցադրուեցաւ այլ առաջնակարգ ցուցադրասրահներուն մէջ:

Երէկ Չորեքշաբթի 6 Դեկտ. ի երեկոյան ժամը 5.30ին, Միջազգային Համագումարներու կեդրոնին մէջ տեղի ունեցաւ մամուլի ասուլիս մը, ու Նորան տուաւ կարգ մը բացատրութիւններ ֆիլմին բեմադրութեան և այլ թեքնիք հարցերու շուրջ:

Ուրախութեամբ տեղեկացանք թէ Նորա Արմանի և Ժիրայր Բաբազեան այս ամսուայ վերջ Եգիպտահայ համայնքին պիտի ներկայացնեն զանազան ելոյթներ:

**ԹՈՒՐՔԻԱՅ**

## ՑՈՅՑԵՐ ԷՐԶՐՈՒՄԻ ՄԷՋ ՄԵԾԱՄՕՐԻ ԱԹՈՄԱԿԱՅԱՆԻՆ ՎԵՐԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱՐ

Էրզրում Նոյ 24 : Էրզրումի ժողովուրդը հսկայական բողոքի ցոյցի մը ձեռնարկած է Մեծամօրի Աթոմակայանին վերագործման դէմ, նկատի ունենալով, որ ան կը գտնուի Հայաստանի սահմաններէն միայն քանի մը քիլոմեթր ներս:

Ցոյցին մասնակցեցան Էրզրումի մէջ գտնուող ընկերակցութիւնները, սկաուտական միութիւնները, արհեստակցական զանազան կազմակերպութիւններ, որոնք Հավուզպաշը հրապարակին վրայ Անկախութեան քայլերգը երգեցին և յարգանքի կեցան Աթաթիւրքի արձանին առջև: Աւելի վերջ, ճառախօսներ խօսեցան կորիզային կայաններու ներկայացուցած վտանգներուն մասին:

Թուրքիոյ Աթոմային Զօրութեան պատասխանատուներէն Եըլմազ Պէքթար յայտարարեց, թէ Մեծամօրի աթոմակայանը, Թուրքիայէ առաջ և անկէ շատ աւելի մեծ վտանգ մը կը ներկայացնէ Հայաստանի և Հայ ժողովուրդին համար:

Կազմակերպուած հաւաքոյթին մասնակցեցաւ նաև Վրաստանի Գիտութիւններու Ակադեմիայի Աթոմագիտական Ամպիոնի դասախօսներէն Շիւքրիւ Ակրամիծէ:

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՆՔԸ ՏՐԱՄԱԴՐԵԼ Է 485 ՀԱԶԱՐ ՏՈԼԱՐ

Սեւանայ լճի կենդանական և բուսական աշխարհի վերականգնման, ինչպէս նաեւ գիւղատնտեսական, արդիւնաբերական և կոմունալ, աղտոտուածութեան դէմ միջոցառումների մշակման նպատակներով Համաշխարհային պանքը տրամադրել է 485 հազար ամերիկեան տոլար:

Յատկացուած գումարի մեծ մասը՝ մօտաւորապէս 410 հազար տոլար, կը տրուի Հայաստանցի և արտասահմանցի փորձագէտներին որպէս աշխատավարձ (376 հազար տոլարը՝ արտասահմանցի և 34 հազարը՝ տեղի փորձագէտներին): Գումարի միւս մասը կ'օգտագործուի հետազօտութիւնների համար անհրաժեշտ սարքաւորումների ձեռքբերման նպատակով:

ՋԱՀԱԿԻՐ

# Ս.Դ.ՀՆՉԱԿԵԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ
## Ժ.Զ. ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

( Շար. Ա. էջէն )

հակադրութիւններու սրումը, որ կը չլատէ համազգային ճիգերուն համադրութիւնը՝ Հայ Անկախ Պետականութեան կայացումին: Իր Սոցիալ-Դեմոկրատական ծրագրային դրոյթներէն մեկնելով գտաւ, որ հայրենի ժողովուրդը ազատ տնտեսութեան, - պետական հակակշռով պայմանաւորուած, դրութենէն ինք ըլլայ առաւելաբար օգտուողը, - փոխան մենաշնորհեալ շահամոլ դասակարգի մը յառաջացումին, - ընկերային ապահովութեան, արդարութեան և հանրօգուտ կառոյցներու ամրացումով և ամրապնդումովը ժողովրդավարական դրոյթներու: Ժողովուրդի ընկերային դրութեան բարելաւումի անտեսումը և որեւէ խախտում դեմոկրատիայի, անտարբեր պիտի չձգէ Հնչակեան Կուսակցութիւնը, իրեն վերապահելով շինիչ և դրական քննադատութեան իրաւունքը:

Հայրենիք-Սփիւռք յարաբերութիւնները նոր և յուսադրիչ հանգրուան կը նշեն՝ անկախ պետականութեան ստեղծումէն ասդին: Ժ.Զ. Համագումարը այդ իրողութեան լոյսին տակ քննարկելով Հայրենիք-Սփիւռք յարաբերութիւնները առաջադրեց ստեղծուած աւանդութիւններու շարունակումը: Ճեշտեց հայ ժողովուրդի ժամանակակից կեանքին մէջ Սփիւռքի դերին կարեւորութիւնը՝ հայ ժողովուրդի պահանջատիրութեան, հայրենի պետականութեան զօրացման ծառայող քաղաքական-քարոզչական միջոցներու օգտագործման մէջ՝ Հայաստանը Սփիւռքի տարածքին ներկայացնող բոլոր մարմիններուն և կառոյցներուն հետ գործակցութեան սկզբունքով: Ահա թէ ինչու խիստ անհրաժեշտ նկատեց "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի շուրջ սփիւռքահայութեան ամբողջականօրէն համախմբումը և արագ կշռոյթով անոր վերաշխուժացումը: Իսկ միւս կողմէ՝ Ժ.Զ. Համագումարը ընդգծեց, որ հայրենի պետութեան կողմէ պայմաններու ստեղծումով դիւրացուին և քաջալերուին արտասահմանաբնակ գործարար հայերու ներդրումները՝ ի խնդիր հայրենաշինական ծրագիրներու կենսագործման:

Հայկական Սփիւռքին օգնելու, Հայկական Սփիւռքէն օգտուելու առաջադրանքներով և փոխադարձ կապերը ամրացնելու ազգաշէն քաղաքականութեամբ, Ժ.Զ. Համագումարը անյետաձգելի պահանջք նկատեց Սփիւռքի յատուկ նախարարութեան մը ստեղծումը, որ պետական մակարդակով կազմակերպուին և կարելի յաճախակիութեամբ քաղաքական, կրթական, մշակութային, գիտական և ազգային բնոյթի գիտաժողովներ, - Սփիւռքէն մասնագէտներու ներգրաւումով,- յօգուտ հայ ժողովուրդի երկու հատուածներու փոփադարձ ճանաչման, մերձեցման, մշակոյթներու ներթափանցման՝ հայ ընդհանրական մշակոյթի որակաւորման մեկնակէտով:

Սփիւռք-հայրենիք մակարդակի վրայ երկքաղաքացիութեան հարցը բազմակողմանիօրէն քննարկելով հանդերձ՝ Ժ.Զ. Համագումարը անոր վերջնական բիւրեղացումն ու վճռումի յանգումը վերապահեց հայրենի պետականութեան, կուսակցութեանս ղեկավար մարմնին հայրենի պետութեան հետ խորհրդակցութիւններով Սփիւռքահայութեան հետ սկզբունքային համախոհութեան մը հասնելու առաջադրանքով:

Ս.Դ.Հ.Կ. Ժ.Զ. Համագումարը հայրենի ազգային պետականութեան վերապահելով Հայ-Թուրք փոխ-յարաբերութիւններու ներկայ հանգրուանի Հայաստանի շահաւէտութեան համար վարած քաղաքականութիւնը, աշխարհագրա-քաղաքական իրավիճակի իրապաշտ գնահատութեամբ, վերահաստատեց հայութեան անտեղիտալի պահանջատիրութիւնը հայկական դատի հետապնդման գծով, նկատելով թէ հայկական դատը ամենէն մարդկայնական և արդարագոյն դատերէն մին է աշխարհի վրայ ու անոր արդարացի լուծումը անպայման կը ծառայէ մարդկային քաղաքակրթութեան: Ցեղասպանութեան դատապարտումն ու հայկական դատի պահանջատիրութիւնը ուղղուած չէ ո՛չ մէկ ազգի կամ կրօնքի դէմ: Ժ.Զ. Համագումարը գտաւ թէ հայկական դատի հետապնդման ամենէն նպատակայարմար և ազդու եղանակը համահայկական Կեդրոնական Մարմնի մը ստեղծումն է, ուր ներգրաւուած ըլլան հայ ժողովուրդի բոլոր գործօն և կենսունակ ազգային ուժերն ու քաղաքական միաւորները: Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը զայն առաջադրելով հայ կեանքի բոլոր բեւեռներուն պատրաստակամ է համագործակցութեան: Հայկական դատի հետապնդման մարտավարութիւնը, բանաձեւեց Համագումարը, կը մեկնի միջազգային և շրջանային ռազմա-քաղաքական կացութիւններէն:

Ս.Դ.Հ. Կուսակցութեան Ժ.Զ. Համագումարը ողջունեց Լեռնային Ղարաբաղի անկախ հանրապետութիւնը և իր զօրակցութիւնը վերահաստատելով անոր ազատագրական պայքարի յաղթական երթին և ելքին, ջատագովեց զինադուլի և խաղաղութեան հաստատման շարունակումը, - փոխադարձ հասկացողութեան մթնոլորտի մէջ բանակցութիւններու կայացումով,- յանգելու համար արդար լուծումին՝ պատմա-աշխարհագրական անուրանալի իրաւունքի ճանաչման հիմունքով: Արցախի փոնտը քաջալերելու և անոր ուժ տալու ազգային հետեւողականութիւնը մեծապէս պիտի նպաստէ աւերածութիւններու վերաշինութեան, հողագործական արդիւնաբերութեան զարգացման և գաղթականներու հայրենի օճախ վերադարձին: Արցախի ազգային վերազարթօնքին:

Հակառակ Մայր Աթոռ Ս. Էջմիածնի Նոր Գահակալին և Կիլիկիոյ Հայոց Նոր Կաթողիկոսին միջև բնական և իրարհասկացողութեամբ յատկանշուող յարաբերութիւններուն՝ Հայաստանեայց Առաքելական Եկեղեցւոյ միասնութեան նշանաբանով՝ Հայ Եկեղեցւոյ տագնապը կը շարունակէ անլոյծ մնալ: Ս.Դ. Հնչակեան Կուսակցութիւնը մնալով հաւատարիմ իր աւան-

( Շար. տեսնել էջ Գ. )

## ՀԱՅԱՍՏԱՆ ԱՇԽԱՐՀԷՆ

### "ԿԵՆԱՑ ԾԱՌ" ԽԱՉՔԱՐԸ ՅԱՒԵՐԺՈՒԹԵԱՆ ԽՈՐՀՐԴԱՆԻՇ

Սեպտեմբերի 21-ին աւարտուն տեսքով բացուեց Հայոց Ցեղասպանութեան թանգարանը որպէս մեր ժողովրդի յաւերժութիւնը հաստատող մի յուշարձան:

Թանգարանի կառուցումը նախատեսուած էր Մեծ Եղեռնի 80-րդ տարելիցին նուիրուած միջոցառումների կազմակերպման պետական յանձնաժողով ստեղծելու մասին ՀՀ Նախագահի հրամանագրով: Ապրիլի 24-ին բացուեց ժամանակաւոր ցուցադրութիւնը, բայց աշխատանքները աւարտուած չէին: Միայն Սեպտեմբերի 21-ին շինարարները վերջին "վրձնահարուածները" հասցրին, և յուշահամալիրն ամբողջացաւ: Դրուեց նաեւ վերջին քարը՝ հայ ժողովրդի վերածնունդը խորհրդանշող "Կենաց ծառ" խաչքարը:

Պատմական այս հաստատութիւնը բացառիկ կառոյց է, ճարտարապետական հետաքրքիր լուծումներով, որը հեղինակել են ճարտարապետներ՝ Մ. Քալաշեանը և Լուդմիլա Մկրտչեանը: 2000 քառակուսի մեթր տարածքով եռայարկ շէնքի արտաքին տեսքը քառակուսի ամրոց է յիշեցնում: Ներքին բակի բազալտակուռ պատի 12 նիստերի վրայ շունչ են առել և յաւերժացել դարի մեծերի Ալբերտ Այնշթայնի, Վալերի Բրուսովի, Հէնրի Մորգէնթաուի և միւսների խօսքերը, որ ժամանակին հնչել են ի

( Շար. տեսնել էջ Գ. )

# ԵՐԳՉՈՒՀԻ ԷՄՄԱ ՊԱՊԻԿԵԱՆ
## ԾԱՓԵՐ ԿԸ ԽԼԷ ԵՐԵՒԱՆԻ ԵՒ ԵՒՐՈՊԱՅԻ ՄԷՋ

Վերջերս Երեւանի ազգային օփերայի սրահին մէջ, մենահամերգով ելոյթ ունեցաւ երգչուհի՝ Էմմա Պապիկեան, որուն իւրաքանչիւր ելոյթը, ըստ երաժշտագէտներու կարծիքին, կը հասնի մինչև վերթիւոզի սահմանները: Էմմա Պապիկեան այսօր հազուադէպ կերպով կ'երեւի թատերաբեմի վրայ, բայց անոր հետ համաձայնութիւններ կնքած են աշխարհի բազմաթիւ նշանաւոր համերգասրահները: Հայաստանի "Ազգ" թերթի աշխատակից՝ Անահիտ Յովսէփեան նշանաւոր երգչուհուին հետ ունեցած է հարցազրոյց մը, որմէ կը քաղենք հատուածներ:



Էմմա Պապիկեան

Հ.- Արուեստաբանները կ'ըսեն թէ Էմմա Պապիկեան անունը պատիւ կը բերէ օփերային թատրոնի:

Պ.- Կը ջանամ ընել, ինչ որ կրնամ: Յատկապէս արտասահմանի մամուլի կարծիքներէն է որ ես գաղափար մը կ'ունենամ իմ մասին: Յօդուածներու մէջ միշտ զիս կը յիշեն իբրեւ "Հայաստանի երգչուհի": 1983-էն ի վեր Սպենդիարեան թատրոնի մեներգչուհի եմ և արտասահմանի մէջ ալ միաժամանակ ելոյթներ կ'ունենամ:

Հ.- Հայ ունկնդիրը այսօր աւելի շատ պիտի զգայ ձեր պահանջքը, քանի որ օփերայի մեծ անուններ Հայաստան չեն գար սա վերջերս:Երեւանի ունկընդիրը ի՞նչ տպաւորութիւն ունեցաւ ձեզմէ:

Պ.- Հակառակ որ արտասահմանի մէջ զիս միշտ յոտընկայս կ'ողջունեն, ես իմ ամենաերջանիկ պահերը կ'ապրիմ Հայաստանի մէջ, իսկ հայ ունկնդիրը կը տարբերի իր համեստութեամբ: Զուսպ է:

Հ.- "Պիս" կամ "պրաւօ" քի՞չ կը պոռայ:

Պ.- Գերմանիոյ մէջ, երբ առաջին համերգս ունեցայ Համպուրկի երաժշտանոցի սրահին մէջ, 2000 ունկնդիրներ կային դիմացս: Երբ համերգը վերջացաւ, ինծի այնպէս թուեցաւ, որ երկրաշարժ կը պատահի և բեմը կը սահի ոտքերուս տակէն: Շատ վախցայ, բայց աւելի վերջ իմ գործակատարս ինծի բացատրեց, որ այստեղ ժողովուրդի իր ոտքերը գետին զարնելով ու պոռալ կանչելով, իր լաւագոյն ընդունելութիւնը ցոյց տուած կ'ըլլայ:

Հ.- Կ'ըսուի որ դուք եռկա կը կատարէք և ձեր երգեցողութեան ամբողջ թեքնիքը հիմնուած է եռկայի վրայ:

Պ.- Սկզբնական շրջանին, երբ կ'երգէի, եռկայի ծանօթ չէի: Երբ Ինտիրա Կանտի Խորհրդային Միութիւն այցելեց, բոլոր թերթերուն մէջ եռկայի մասին կցկտուր նիւթեր հրատարակուեցան: Կարդալէ ետք հասկցայ, որ ես առանց տեղեակ ըլլալու, շարունակ նոյն

( Շար. տեսնել էջ Գ. )

# ԽՈՐՏԱԿԻՉ ՈԳԻՆԵՐԸ

ՏԷՅՎԻՏ ՊԼԷՅՔ

Մեր անցեալ թիւով լոյս տեսած դաշնակահար Հայկ Աւագեանի մասին տպաւորիչ գնահատականը, զոր թարգմանաբար արտատպած էինք, "Էլ Ահրամ Ուիքլի" անգլիատառ շաբաթաթերթէն, տպագրական վրիպումի մը պատճառաւ, խանգարուած էին սիւնակները: Ուստի մեր ընթերցողներուն ներողամտութիւնը կը հայցենք և այս թիւով կրկին կու տանք թարգմանաբար իր շահեկանութեան համար:

ԽՄԲ.

*Դաշնակի եղանակը կը վերսկսի: Տարբեր վայրերէ ժամանած դաշնակահարներ՝ համախմբուելով սահմաններուն վրայ, պատրաստ են մուտք գործել Գահիրէի օփերայէն ներս: Անոնք կը յայտնուին տարբեր ձեւերով՝ խելագար, վատ, բարձրահասակ ու կարճահասակ, հաւասարակշիռ կամ արտասովոր. ձեզի կը մնայ ընտրել: Հաճելի է ընտրել յատկապէս այն նուագողները՝ որոնք կը շեղին արմատացած դասական նուագացանկէն:*

*Այս արշաւողներէն մէկն է Հայկ Աւագեան, աննկուն մարտիկ մը՝ որուն խայտանքը սակայն կը ներկայացնէ վաւերական փիանիզմը: Ան ամուր հողի վրայ է և ոչ թէ հաճոյակատար դրութեան մէջ: Գիտէ թէ ինչ բան կարող է լաւագոյնս կատարել, հետեւաբար կը կատարէ զայն: Իսկ ինչ որ լաւագոյն կերպով կը կատարէ որոտումն է: Որոշ դաշնակահարներ՝ ինչպէս Ճոն Օկտըն, այդպէս կը կատարեն: Եթէ հնչիւնի աստիճանները տարբերակուած են, կատարման այս կերպը լուրջ խոչընդոտ մը չէ բաւականութիւն ստանալու դաշնակէն: Աւագեանի հպումը (թուչէ ) և ձայնաստիճանը (թոն) նչեցին ամբարձումներ և խոնարհումներ: Ամբարձումներէն է զորս ան հաճոյք կը ստանայ: Ձեր ականջին կը մնայ զայն ընդունիլ. ան երբեք պէտք պիտի չունենայ բարձրախօսի:*

*Բայց և այնպէս, հակառակ որոտալի ճայթիւններուն և փայլատակութեան, այն յաջող է նաեւ մանրապատումներուն մէջ: Անընդհատ բան մը կը պատահի: Իր նուագելակերպը անհաճոյ է որոշ շրջանակներու համար՝ քանզի ան չի պատշաճիր սպառած դասական կերտուածքին: Ան նման է անցեալի այն հռչակաւոր դաշնակահարներուն՝ որոնք առանց մկան մը իսկ պրկելու կամ առանց երբեք կատարելու մարմնի որեւէ շարժում, կարող եղած են արտաբերել բարձրագոյն հնչեղութիւն:*

*Մենանուագին սկիզբը,դաշլիճը խորտակուեցաւ Չայքովսքիի սոլ մաժոր սոնաթով, երկ 37: Աւելի ուշ, երեկոյի բարձրակէտը պիտի ըլլար Տիւքայի վիթխարի մի պէմոլ մինոր սոնաթը՝ Ֆրանսացիի մը ընծան դաշնամուրային գերխորտակման:*

*Հաւանաբար, Չայքովսքին խստաշունչ տրամադրութեամբ էր աւլցուն՝ երբ կը յօրինէր երկ 37-ը: Սոնաթը խիստ անհարթ է ու անողորկ, ուր կը բացակայի ռուսական նկարագիրը և Չայքովսքիին յատուկ համակուածութիւնն ու նրբագեղութիւնը: Անկասկած ոչ սլաւական ոճով յօրինուած, այնտեղ կը գտնենք ոչ այլ ինչ՝ քան հմտօրէն շարադրըւած անսպասելի ընդմիջումներու և դադարներու, մանր մեղեդիներու հոյլ մը: Թաքնըւած փերիներ կան այս սոնաթին ընդհատակը՝ նման գիշերային անառակ կայծոռիկներուն, որոնցմէ ետք, սակայն, խորտակիչ աքորներու շարք կու գայ փարատելու այս բոլորը: Դժուար է զայն նուագել և դժուար՝ մեկնաբանել: Այստեղ միայն մէկ տրամադրութիւն մը չէ որ կը տիրապետէ, այլ կը գտնուի տրամադրութիւններու հոյք մը, անսպասելի ընդհատումներ, և յետոյ կրկին բախումներ: Աւագեան ցոյց տուաւ իր կորովը այս երկար դժուարամարս ստեղծագործութիւնը նուագելով մենանուագին սկիզբը:*

*Յաջորդ երկու ստեղծագործութիւնները՝ Զուհաճեանի "Արեւելեան քնար" քափրիչիօն և Ալ-Ռիմալիի "Քնարական ստեղծագործութիւնները" չէին պատշաճիր երեկոյի պերճաշուք տրամադրութեան:Այնուհետեւ, կատարուեցաւ իսկական գրոհը: Դաշնակի այս*

( Շար. տեսնել էջ 4 )

# ՃԱՀԱԿԻՐ

ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

چاهكير
جريدة أسبوعية
ص.ب ٢١١١ بالقاهرة ج.م.ع - ت: ٣٩١٤٩٠٨

TCHAHAKIR
HEBDOMADAIRE ARMENIEN
B. P. 2111 Le Caire (R.A.E.) Tél. 3914908
Adresse Télégraphique : TCHAHAKIR, Cairo

Հիմնուած 1948

ՆՈՐ ՇՐՋԱՆ ԹԻՒ 1325 - ՀԻՆԳՇԱԲԹԻ 21 ԴԵԿՏԵՄԲԵՐ 1995 ՀԱՏԸ ՋՍՌՔԷ 25 նգ. Դհկ. ١٩٩٥ الخميس ٢١ ديسمبر - ١٣٢٥ عدد رقم


## ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԻՒՆԸ, ԱԶԳԱՅԻՆ ՊԱՐՏԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՍՓԻՒՌՔԱՀԱՅԵՐՍ

*Վերջին 5-6 տարիներուն սփիւռքահայութեան յուզող շատ և բազմազան հարցեր կան:*

*Եղան հսկայական փոփոխութիւններ (և դեռ կը շարունակուին), թէ միջազգային և թէ հայկական մակարդակներու վրայ: Վերոյիշեալ վերնագիրի էութեան-բովանդակութեան մասին շատ գրուած է, վիճաբանութեան նիւթ եղած և դեռ պիտի շարունակուի վճռորոշ դեր կատարել "ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ" հասկացողութիւնը սփիւռքահայ լայն զանգուածներուն մօտ, որոնք շփոթած են հայրենասիրութիւնը և ազգասիրութիւնը և այլ հարցեր իրար հետ:*

*Պարզէն ալ պարզ է, որ հայրենասիրութիւնն ու ազգասիրութիւնը իրար լրացնող օղակներ են, բայց այնուամենայնիւ կան տարբերութիւններ:Այդ ո՛վ ունի ազգային հպարտութեան զգացում, հետևաբար և անհրաժեշտօրէն պիտի ըլլայ իսկական հայրենասէր մը: Դժբախտաբար շատ մը սփիւռքահայերու մօտ այդպէս չէ... Նոյնիսկ նախապատուութիւն կը տրուի կուսակցական շահերուն, ապա միւս բարոյական և կենսական պարտաւորութիւններուն: Օտարամոլութեան ախտէն, ազգային - հայրենասիրական պարտաւորութիւններէ զուրկ ըլլալու պատճառով, սփիւռքի 3 միլիոն հայութեան (40-է աւելի գաղութներու մէջ) միայն կէսը գիտեն հայերէն խօսիլ, հետևաբար երբ չկայ ազգային մաքուր լեզուամըտածողութիւն, ինչպէ՞ս խօսիս և համոզես (բացառութիւններ յարգելի են) հայրենասիրութեան և ազգային պարտաւորութիւններու մասին, երբ հայ անհատը հետդ կը խօսի՝ անգլերէն, ֆրանսերէն, սպաներէն...:*

*Իսկական և անխարդախ հայրենասիրութիւնը (նոյնիսկ երբ հեռու կ'ապրինք), այդ մայր երկրի հանդէպ սփիւռքահայու վերաբերմունքը բնորոշող հասարակական և բարոյական զուլալ սկզբունք ունենալն է: Հարազատ հայը ով առողջ միտք և կենսունակ սիրտ ունի, ուրեմն պիտի ըլլայ հայրենասէր, պիտի ցնծայ և հոգեպարար ոգևորութեամբ ձգտի մանուկ նորանկախ հայրենիքի բարգաւաճման գործին անսակարկօրէն ծառայելու:*

*Հաւատարիմ ըլլալ հայրենիքի գերագոյն շահերուն կը նշանակէ՝ ինքնազոհողութեան պատրաստակամութիւն, իր հայրենիքի սոցիալական և մշակութային նուաճումներուն հանդէպ հպարտութիւն և ակնածանք, յարգանք հայրենիքի պատմական անցեալի և ժառանգած աւանդոյթներուն հանդէպ, կարեկցիլ և գիտակցօրէն աջակցիլ ժողովուրդի կրած տառապանքներուն և պայքարին թէ՛ բարոյապէս և թէ՛ նիւթապէս:*

*Ի՞նչ են մեր զուտ ազգային պարտաւորութիւնները, որպէս սփիւռքահայեր մեր նորանկախ հայրենիքի հանդէպ, երբ չորս տարիներէ ի վեր դժուարին պայմաններու մէջ (բայց լաւատեսութեամբ լեցուն) կը կերտուի և կ'ամրապնդուի անկախութեան գործընթացը:*

*Նախ ըսենք, որ եթէ իսկապէս պիտի կարենանք գիտակցօրէն կատարել մեր ազգային բազում պարտաւորութիւնները, ապա պիտի ունենանք ամենաէական գիծերէն մին՝*

*- հասարակական գիտակցութիւն և կարգապահութիւն:*

*- Սկզբունքայնութիւն, կը նշանակէ հետապնդելով որոշ նպատակ մը (այստեղ ծառայել հայրենիքին և ազգին անշահախնդրօրէն), համոզուած ըլլալ այդ սկզբունքին վրայ և հետևողականօրէն իրագործել զայն: Ըսած են, որ. "առանց որոշակի աստիճանի վստահութեան անհնարին կը դառնայ համատեղ գործունէութիւնը և մարդկային հաղորդակցումը": Հետևաբար՝*

*- խօսքի և գործի միասնութիւնը ազգային պարտաւորութիւնները կատարելու ծիրին մէջ առաջնային է: Զարմանալի է թէ ողբերգական, երբ մտածենք, որ մէկ միլիոն հաշուող ամերիկահայերու (որ շատերը յաճախ կը հպարտանան) մէջ նիւթապէս միջակ և հարուստ 50 հազար անհատ կա՞յ արդեօք, որպէսզի կարենան տարին գոնէ ՄԷԿ անգամ հազար տոլար նուիրաբերեն (ամիսը 83 տոլար) հայրենիքի վերակառուցման, հայրենաշինութեան հսկայ գործին, որպէս Ազգային Տուրք "Հայաստան" Համահայկական Հիմնադրամի միջոցաւ, այսինքն տարին 50 միլիոն տոլար.. չկա՞ն...անշուշտ կա՛ն և այն ալ շա՛տ, բայց կը "գործեն" միայն խօսքով:*

*- Ունենալ առողջ կենսադիրքորոշում, համոզումներով, նպատակներով, հայեացքներով և խիղճով համալրուած:*

( Շար. տեսնել էջ 4. )

## ՀՀ ՆԱԽԱԳԱՀ ԼԵՒՈՆ ՏԷՐ ՊԵՏՐՈՍԵԱՆ ՀՆԴԿԱՍՏԱՆ ՄԵԿՆԵՑԱՒ

Անցեալ Շաբաթ 16 Դեկտեմբերին, ՀՀ նախագահ Լեւոն Տէր Պետրոսեան Հնդկաստան մեկնեցաւ պաշտօնական այցով մը: Նախագահին կ'ուղեկցին արտաքին նախարար Վահան Փափազեան, արդիւնաբերութեան նախարար Աշոտ Սաֆարեան և այլ հանգամանաւոր դէմքեր: Վ. Փափազեան յայտնեց, թէ Հնդկաստան առանձնայատուկ հետաքրքրութիւն ունի մեր պետութեան համար: Ան տեղեկացուց որ ծրագրուած է համագործակցութեան և բարեկամութեան միջ-պետական համաձայնագիր մը ստորագրել:

## ՆՇՈՒՄ ԴԵԿՏԵՄԲԵՐԵԱՆ ԵՐԿՐԱՇԱՐԺԻ ՅԻՇԱՏԱԿԸ

Կիրակի 10 Դեկտ. 1995-ի առաւօտեան, Գահիրէի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մէջ, հոգեհանգստեան պաշտօն կատարուեցաւ ի յիշատակ Հայաստանի մէջ 7 Դեկտեմբեր 1988-ին տեղի ունեցած աղէտալի երկրաշարժի զոհերուն:

Օրուան պատարագիչն էր Թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեան, որ յաւուր պատշաճի քարոզ մը խօսեցաւ ներկայ հաւատացեալ հասարակութեան: Սրբազան Հայրը առաջարկեց, որ հայ ժողովուրդը իր օժանդակութիւնը բերէ երկրաշարժի առիթով տնանկ մնացած որբերուն:

Ապա Ազգային Առաջնորդարանի դահլիճին մէջ հաւաքոյթ մը մը տեղի ունեցաւ, ներկայութեամբ Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպան՝ Դոկտ. Էտուարտ Նալպանտեանի, խորհրդատու՝ Պր. Արմէն Մելքոնեանի, Բ. քարտուղար՝ Արեգ Յովհաննիսեանի, հանգամանաւոր անձերու և սակաւաթիւ հաւատացեալ ներկաներու:

Սրբազան Հօր բացման խօսքէն ետք, ելոյթ ունեցաւ Դոկտ. Է. Նալպանտեան: Ան իր խօսքին մէջ անդրադարձաւ երկրաշարժի առիթով, համայն աշխարհի պետութիւններու բազմազան օժանդակութիւններու մասին, ապա դիտել տուաւ, թէ այդ դժուար օրերուն Սովետական Հայաստանի մէջ, սփիւռքահայութիւնը անխտիր, միասնական աշխատանքներով, իր բոլոր կարելիութիւնները ի գործ դրաւ աջակցելու և սատարելու երկրաշարժին տուժածներուն: Եւ սակայն ըսաւ ան,- այսօր որ ունինք նորանկախ պետութիւն, կը պակսի այդ ոգին սփիւռքահայութեան մօտ:

Խօսք առաւ նաեւ Պր. Յակոբ Համբիկեան, որ իր կարգին յիշեց աւերիչ երկրաշարժը և անոր հետևանքները:

Չմոռնանք երկրաշարժը, որ տեղի ունեցաւ ասկէ եօթ տարիներ առաջ, որուն զոհ գացին աւելի քան 25 հազար հայորդիներ: Չմոռնանք որ տակաւին մեծ թիւով հայեր Հայաստանի մէջ, երկրաշարժի հետևանքով կը մնան անտէր և տնանկ:

Մ.

ԼՈՍ ԱՆՃԵԼԸՍ

## ՏԻԿ.ՄԱՆՈՒՇԱԿ ՊԵՏՐՈՍԵԱՆԻ ՀԱՆԴԻՊՈՒՄԸ Ս.Դ.Հ.Կ. ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉՆԵՐՈՒՆ ՀԵՏ

"Հայաստան" Համահայկական Հիմնադրամի գործադիր վարչութեան տնօրէնուհի Տիկ. Մանուշակ Պետրոսեան, Նոյեմբեր 9-12,Լոս Անճելըս կեցութեան շրջանին հանդիպումներ ունեցաւ հայ քաղաքական, կրօնական և բարեսիրական կազմակերպութիւններու ղեկավար մարմիններու և ներկայացուցիչներու հետ, Հիմնադրամի նպատակին, ծրագիրներուն և աշխատանքներուն վերաբերող հարցերու քննարկման և Հիմնադրամի միջոցներու զօրացման կարելիութիւնները որոնելու նպատակով:

Առ այդ, Տիկ. Պետրոսեան, ընկերակցութեամբ պատուիրակութեան մը որուն մաս կը կազմէին Հայաստանի Հանրապետութեան Լոս Անճելըսի գլխաւոր հիւպատոս Պր. Արմէն Բայբուրդեան, Հիմնադրամի Արեւմտեան Ամերիկայի յանձնաժողովի նախագահ իրաւաբան Րաֆֆի Ուրֆալեան, Հիմնադրամի գրասենեակի տնօրէն Պր. Հայկ Անտոնեան և հանրային կապերու վարիչ Պր. Հրանդ Անէմեան:

Ուրբաթ 10 Նոյեմբերի կէսօրէ ետք ժամը խ-ին, պատուիրակութիւնը հանդիպում մը ունեցաւ Ս.Դ.Հնչակեան Կու-

( Շար. տեսնել էջ Գ. )

## ԵԳԻՊՏՈՍԸ ՄԱՍՆԱԳԷՏՆԵՐԻ ՎԵՐԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՈԼՈՐՏՈՒՄ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՅՈՒՍԱԼԻ ԳՈՐԾԸՆԿԵՐ

Ինչպէս տեղեկացանք Եգիպտոսում ՀՀ դեսպանութիւնից, վերջին երեք ամսուայ ընթացքում տարբեր մասնագիտութիւնների գծով Գահիրէում պարբերաբար կազմակերպուող վերապատրաստման յատուկ դասընթացներին Հայաստանից մասնակցել է մօտ 23 հոգի, այդ թւում կառավարութեան աշխատակազմի, տարբեր նախարարութիւնների, պանքային համակարգի աշխատակիցներ, լրագրողներ և այլն:

Արդէն նկատելի տարին է, ինչ Հայաստանի և Եգիպտոսի միջև կադրերի վերապատրաստման ոլորտում սերտ համագործակցութիւն է հաստատուել: Այն մեկնարկեց դեռ 1992թ., երբ Եգիպտոսի արտգործնախարարութեան և ՀՀ դեսպանութեան միջև ձեռք բերուած համաձայնութեան հիման վրայ Հայաստանից ութ դիւանագէտներ վեցամսեայ դասընթացների մասնակցեցին Գահիրէի դիւանագիտական ակադեմիայում: Առաջին այս փորձը համագործակցութեան նոր հորիզոններ բացեց և ի յայտ բերեց կողմերի ձգտումը խորացնելու այն: Անցած ժամանակահատուածում կադրերի վերապատրաստման դասընթացներ կազմակերպուեցին այնպիսի բնագաւառներում, որոնցում Եգիպտոսը

( Շար. տեսնել էջ 4. )

## ՀԱՅԱՍՏԱՆ ՄՈՒՏՔ ԿԸ ԳՈՐԾԷ ԻՐԱՆԵԱՆ ՀԵՂՈՒԿ ԿԱԶԸ

"Հայկազ" պարտադրական միաւորման դուստր ձեռնարկութենէն "Նոյեան Տապան" գործակալութեան թղթակիցին տեղեկացուած են, որ Դեկտեմբեր 4-ի ուշ երեկոյեան, Երեւան մուտք գործած է իրանեան հեղուկ կազի հերթական խմբաքանակը, որ կը կազմէ 108 թոն:

Իրանի Իսլամական Հանրապետութեան հետ կնքուած պայմանաւորուածութեան համաձայն Հայաստան պիտի ստանայ 3000 հազար թոն հեղուկ կազ: Դեկտեմբեր 5-ի դրութեամբ ստացուած է 608 թոն:

Միւս կողմէ Երեւանի բնակիչները կը ստանան օրական չորս ժամ ելեկտրականութիւն՝ երկու ժամ առաւօտեան և երկու ժամ երեկոյեան:

ՋԱՀԱԿԻՐ

__ԱՂԵՔՍԱՆԴՐԻԱ__

# ԲԱՆԱԽՕՍՈՒԹԻՒՆ "ՄԵՂՔԻ ԻՆՔՆԱԳԻՏԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀԱՅ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԿԵԱՆՔԻՆ ՄԷՋ".

Կիրակի 19 Նոյեմբեր 1995ի յ.մ.-ի ժամը 4-ին կոկիկ և եկեղեցասէր անդամներու և համակիրներու ներկայութեան համայնքիս հոգեւոր հովիւը՝ Արժ. Տէր Գրիգոր Քհնյ. Մուրատեան կատարեց եկեղեցիին և հաւատացեալին հետաքրքրութիւնը հրահրող բանախօսութիւն մը, որ տեղի ունեցաւ "Տիգրան Երկաթ" Մշակութային Միութեան (Նազարէթ Զամպաքեան)Սրահին մէջ:

Վարչութեան փոխ ատենապետ Տոքթ. Կարօ Անսուրեան օրուայ բանախօսը և նիւթը ներկայացնելէ յետոյ հրաւիրեց Արժ. Տէր Հայրը որ իր բանախօսութիւնը կատարէ՝ ՄԵՂՔԻ ԻՆՔՆԱԳԻՏԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ՀԱՅ ՔՐԻՍՏՈՆԵԱՅ ԿԵԱՆՔԻՆ ՄԷՋ:

Արժ. Տէր Հայրը՝ Իր խօսքի սկիզբը դիտել տուաւ որ Իր այս բանախօսութեամբ կ'ուզէ մեր ժողովուրդին զգացնել տալ թէ ինչ է մեղք ըսուածը որ միշտ եկեղեցւոյ բեմէն հաւատացեալներուն կը քարոզուի: Ինք կը փափաքէր որ ժողովուրդը ըմբռնէ մեղքի իմաստը և զգոյշ ըլլայ սխալ ըմբռնումէ, սխալ գործելէ և այդպիսով սխալ ճանապարհի մէջ գտնուելէ, ոչ միայն սխալ գործողը այլ նաեւ իր շուրջ գտնուողները:

Եթէ ըսաւ, Տէր Հայրը,- հաւատացեալը մեղք գործէ Աստուծոյ պատուիրաններուն և Աստուածաշնչի նշումներուն դէմ, եկեղեցականին աւագ պարտականութիւնն է նախ խրատել, իսկ հակառակ պարագային սաստել յանցագործը: Ուստի ըսաւ Ան, ջանացէք Ս. Գիրքը կարդալ և եկեղեցի յաճախել ոչ թէ ցուցամոլութեան կամ հաճոյքի համար, այլ հոգեւորականի քարոզներուն հետեւիլ կարենալ գիտնալու համար, թէ ինչ պէտք է ընել և ինչը ոչ, մեղք չգործելու և Աստուծոյ դէմ չմեղանչելու համար:

Բանախօսութեան աւարտին, Միութեան անունով, փոխ ատենապետ՝ Տոքթ. Կ. Անսուրեան շնորհակալութիւն յայտնեց այս օգտաշատ և միշտ այժմէական եղող բանախօսութեան համար, նոյն ատեն խնդրելով Արժ. Տէր Հօրմէ, որ պահպանիչով փակէ օրուայ հաւաքոյթը:

Թղթակից
ՄԻՆԱՍ ՊԱՆՏՈՅԵԱՆ

# 100-ԱՄԵԱԿ ԶԷՅԹՈՒՆԻ ԱՊՍՏԱՄԲՈՒԹԵԱՆ

Հայաստանի Գիտութիւններու Ակադեմիային պատմութեան բաժինը գործակցելով "Զէյթուն" պատմամշակութային միութեան հետ, նախաձեռնած է գիտաժողովի մը, Զէյթունի ապստամբութեան հարիւրամեակին առթիւ: Պատմութեան բաժինին տնօրէն Հրանդ Աւետիսեանի բացման խօսքէն և ակադեմիային նախագահ Ֆադէյ Սարգսեանի ողջոյնի խօսքէն ետք, զեկուցում մը կարդացած է ակադեմիկոս Մկրտիչ Ներսիսեան. ան շարժումին պատմականը ընելէ ետք խօսած է նաեւ նիւթին վերաբերող գրականութեան ու դիւաններուն մասին:

Փրոֆ. Յ. Պօղոսեան Զէյթունի ապստամբութիւնը նկատած է հայ ժողովուրդին պատմութեան ամէնէն փայլուն դրուագներէն մէկը, Սասունի դիմադրութեան հետ: Իսկ փրոֆ. Ա. Համբարեանի զեկուցումը կեդրոնացած է ապստամբութեան շրջանի հայ քաղաքական կուսակցութիւններուն մասնակցութեան խնդիրին վրայ: Հոն գործօն դեր ունեցած են յատկապէս Հնչակեանները: Ապստամբութեան շրջանի կրօնաւոր-ներու գործունէութեան մասին զեկուցած է Է. Կոստանդեան: Զէյթունի ամէնէն ուշագրաւ հոգեւորականները եղած են Ս. Կարապետ վանքին վանահայրը Բարդուղիմէոս Վրդ. Թագճեան և առաջնորդական տեղապահ Կարապետ Երկանեան:

Պատմագէտ Ե. Խառատեան խօսած է "Զէյթունի 1895-ի ապստամբութեան արձագանգները հայ մամուլին մէջ" թէմայով: Իսկ պատմագէտ Ս. Գրքեաշարեանի զեկուցումը

( Շար. տեսնել էջ Գ. )

# Հ.Բ.Ը.Մ. "ԱԼԵՔ ՄԱՆՈՒԿԵԱՆ" ՄԱՏԵՆԱՇԱՐԸ ԵՐԵՒԱՆԻ ՄԷՋ

Հայկական Բարեգործական Ընդհանուր Միութեան "Ալեք Մանուկեան" Մշակութային Հիմնադրամի միջոցներով, միաժամանակ հինգ գիրքեր լոյս տեսան Երեւանի մէջ, սկիզբ դնելով նոր մատենաշարի մը, որ կը կրէ ազգային մեծ բարերարին անունը:

Հինգ գիրքերն են "Մեղեդի Երեւակայական Ջութակի Համար" (Ռաֆայէլ Նահապետեան), "Հիւանդանոց" վէպ (Գուրգէն Խանճեան), "Արտագերս" թատերախաղեր և պատմուածքներ (Ալեքսանդր Թոփճեան), "Հրաժեշտ" վիպակներ և պատմուածքներ (Դաւիթ Մուրադեան) և "Խօսքեր Դատարկ Դահլիճում" բանաստեղծութիւններ (Նորիկ Լեւոնեան):

"Ալեք Մանուկեան" մատենաշարին վարիչն է Երուանդ Ազատեան իսկ խմբագիրը՝ գրող և գրաքննադատ Ալեքսանդր Թոփճեան: Մատենաշարին նպատակն է խթան հանդիսանալ գրական նոր գործերու ստեղծումին, նպաստել տաղանդաւոր բայց քիչ տպագրուած արձակագիրներու և բանաստեղծներու գործերու հրատարակումին՝ Հայաստանի մէջ:

Շուտով նոյն հիմնադրամի աջակցութեամբ Երեւանի մէջ լոյս կը տեսնէ գրականագէտ Դաւիթ Գասպարեանի "Փակ Դռների Գաղտնիքը" ծաւալուն հատորը, 30-ական թուականներու հայ գրողներու և յատկապէս Չարենցի դէմ ծաւալած հալածանքներուն մասին: Յառաջիկայ տարուան համար հրատարակութեան կը պատրաստուին հինգ հեղինակներու նոր գործեր:

# ԸՆԹԱՑԻԿ ԼՈՒՐԵՐ

## UNICEF-Ի ՕՐԱՑՈՅՑԸ ԵՐԵՒԱՆԻ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀԻՆ ՆԿԱՐՆԵՐՈՎ

ՄԱԿ-ի 50-ամեակին առթիւ պատրաստուած նուէրներուն մաս կը կազմէ UNICEF-ի 1996-ի օրացոյցը: Ան պատրաստուած է Երեւանի Մանկական պատկերասրահէն ընտրուած նկարներու վերատպութիւններով: Կէս միլիոն տպաքանակով այդ օրացոյցը պիտի ցրուի ամբողջ աշխարհի մէջ:

Օրացոյցին մէջ տեղ տրուած է 13 նկարներու: Լիլիա Մարկոսեանի գունաւոր մէկ գծագրութիւնը զետեղուած է կողքին վրայ, իսկ զանազան երկիրներու երախաներու գործերէն ընտրուած նկարներ կը զարդարեն իւրաքանչիւր ամիսի էջը: Օրացոյցը հրատարակուած է գունաւոր և չորս լեզուով. անգլերէն, ֆրանսերէն, սպաներէն և ճափոներէն: Օրացոյցին նախաձեռնողը եղած է Միացեալ - Նահանգներէն Տիկին Ռիթա Պալեան որ Մանկական պատկերասրահի տնօրէն Հենրիկ Իգիթեանի հետ ընտրած է նկարները:

## "ՀԱՅԱՍՏԱՆ -01" ՑՈՒՑԱՀԱՆԴԷՍԸ ՀՈՎԱՆԱՒՈՐՈՂ ԳՏԱԾ

Հայաստանի Հաղորդակցութեան Նախարարութեան և թղթատարական պիտոյքներու ճարտարարուեստի մէջ մասնագիտացած գերմանական "Շրաւպէն Ֆապրիք" հաստատութեան միջեւ ստորագրուած համաձայնութեամբ մը, առաջին քայլը նետուած է հայ - գերմանական միացեալ հաստատութեան մը, որ պիտի արտադրէ թղթատարական մարզին անհրաժեշտ ամէն տեսակ պիտոյք: Գերմանական այս հաստատութեան տնօրէնը, նախարար Գրիգոր Պողպատեանի կողմէ ընդունման ընթացքին ալ յայտնած է փիլաթելիստական համաշխարհային "Հայաստան - 01" ցուցահանդէսը հովանաւորելու իրենց փափաքը և խոստացած է 150 հազար տոլար տրամադրել կազմակերպիչ յանձնախումբին:

## ԱՐՏԱԳԱՂԹԱԾՆԵՐՈՒ ԹԻՒԸ ՉԱՓԱԶԱՆՑՈՒԱԾ

Երթալով կ'աւելնայ Հայաստան վերադարձողներու թիւը, միաժամանակ կը նուազի արտագաղթը:

"Արմէփրէս"ի թղթակիցին հետ զրոյցի ընթացքին այս կարծիքը յայտնած է Հայաստանի տնտեսութեան նախարարութեան բաժնի վարիչներէն, փրոֆ. Սուրէն Կարապետեանը:

Կարապետեան նախ և առաջ խիստ չափազանցուած որակած է հանրապետութենէն արտագաղթողներու մասին տրուած թիւերը, որոնք երբեմն կը հասնին 1,5 միլիոնի:

Նախարարութեան, տնտեսագրութեան ինստիտուտի ժողովրդագրութեան խումբի ուսումնասիրութիւնները կը վկայեն, որ վերջին տարիներուն Հայաստանէն հեռացածներու թիւը չի հասնիր կէս միլիոնի:

Ամենայնդէպս, այս հարցի վերջնական ճշդումը կը կատարուի 1999-ի մարդահամարի ընթացքին:

"ԱՐՄԷՆՓՐԷՍ"

# ԳԱԼՈՒՍՏԵԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՎԱՐԺԱՐԱՆԻ ՇՐՋԱՆԱՒԱՐՏՆԵՐՈՒ ՃՈԽ ՀԱՆԴԷՍԸ

Շաբաթ 2 Դեկտ. 1995ի երեկոյեան ժամը 8ին, տեղի ունեցաւ շրջանաւարտներու ճոխ հանդիսութիւն մը, հովանաւորութեամբ թեմիս առաջնորդ Գերշ. Տ. Զաւէն Արք. Չինչինեանի և նախագահութեամբ Տէր և Տիկ. Անդրանիկ Մեսրոպեանի: Առաջին շարքին վրայ տեղ գրաւած էին Եգիպտոսի մօտ ՀՀ դեսպան Դոկտ. Էտուարտ Նալպանտեան, Քաղաքական ժողովի ատենապետ՝ Տէր և Տիկ. Հրաչ Սիմոնեան, Գալուստեան Ազգ. վարժարանի տնօրէն՝ Պր. Սիմոն Չամքէրթէնեան և վարժարանին Տիկնանց Խնամակալութեան ատենապետուհի՝ Տիկ. Զարուհի Զօրայեան: Ներկայ էին նաեւ ազգային երեսփոխաններ, համայնքիս ներկայացուցչական դէմքեր, ծնողներ, աշակերտներ և հոծ բազմութիւն մը:



Պր. Սիմոն Ջամքէրթէնեան

Եգիպտոսի, Հայաստանի և վարժարանի քայլերգներու նուագածութենէն ետք, հանդիսութիւնը սկսաւ հայերէն լեզուի ուսուցչուհի՝ Տիկ. Զարուհի Գոլոյեանի "Բարի եկաք"ի պատշաճ բացման խօսքով: Ապա սկսաւ աշակերտական գեղարուեստական յաջող յայտագիրը: Իրապէս հրճուալի պահեր ապրեցանք այդ մատղաշ հայորդիներուն հետ, որոնք ինքնավստահ ու համարձակ երգեցին, նուագեցին, արտասանեցին և մանաւանդ լաւագոյնս կատարեցին տրամախօսութեանց իրենց ստանձնած դերերը:

Հոս գնահատանքի խօսք ունինք վարժարանէն ներս դաշնակահարուհի՝ Նարինէ Յովհաննիսեանին, որ կրկնակի աշխատանքով կարողացած էր ճշգրտութեամբ սորվեցնել այդ բոլոր երգերը: Նոյնպէս, թատերական աշխատանքի գծով՝ գնահատելի էր հայերէն լեզուի ուսուցիչ՝ Պր. Ասպետ Արթինեանի բեմադրած "Կիկոսի մահը" միարար կատակերգութիւնը:

Ապա բեմ հրաւիրուեցան վերջին չորս տարիներու ընթացքին վարժարանէն շրջանաւարտած 16 երիտասարդ-երիտասարդուհիներ: Նախքան վկայականներու բաշխումը, շրջանաւարտներու կողմէ ուղերձով հանդէս եկան, արաբերէն լեզուով Պր. Գէորգ Գազանճեան իսկ հայերէն լեզուով՝ Օր. Վիվիան Սէմիզեան: Հրաժեշտի իրենց խօսքին մէջ անոնք յայտնեցին իրենց երախտագիտական յուզիչ զգացումները, յատկապէս ուղղուած Գալուստեան վարժարանին մէջ մօտ 40 տարիներու վաստակ և փորձառութիւն ունեցող նախկին տնօրէն՝ Պր. Նշան Վարդեանին, որ ինչպէս յայտարարուեցաւ, ան այժմ մասնաւոր հրաւէրով Աւստրալիա կը գտնուի, քանի մը ամսուայ այցելութեան համար: Ապա տեղի ունեցաւ վկայականներու և մրցանակներու բաշխման արարողութիւնը:

Հանդիսավար՝ Տիկ. Գոլոյեան բեմ հրաւիրեց խօսելու երիտասարդ տնօրէն՝ Պր. Սիմոն Չամքէրթէնեան: Հոս յայտնենք թէ նորընտիր յարգելի տնօրէնը ասկէ քանի մը տարիներ առաջ, շրջանաւարտ եղած է նոյն վարժարանէն, և հետեւաբար ան իր անկեղծ զգացումները յայտնեց բոլորիս սիրելի հայկական այս կրթական օճախին մասին: Ապա թուեց վերջին ամիսներուն վարժարանէն ներս եղած կարգ մը նորոգութիւններն ու անհրաժեշտ բարեկարգումները: Նաեւ շեշտը դրաւ վարժարանին ուսումնական մակարդակը բարձրացնելու գծով տարուած աշխատանքին վրայ: Յարգելի տնօրէնը դրուատեց Ազգային Իշխանութեանց անդամները, որոնք ճիգ չեն խնայեր բարւոքելու մեր հայկական վարժարանները, ապա խօսքը ուղղելով ծնողներուն ըսաւ ան. *"Ուրեմն առանց երկմտելու վստահեցէք ու ղրկեցէք ձեր զաւակները մեր հայկական վարժարանները հայեցի դաստիարակութիւն ստանալու համար: Եւ մենք մեր ամէն կարելին պիտի ընենք, որ մեր վարժարանները չտարբերին երբեք այլ դպրոցներէ և անոնց ունեցած ուսումնական բարձր մակարդակէն"*:

Նոյնպէս Պր. Ս. Չամքէրթէնեան արտայայտուեցաւ Պր. Նշան Վարդեանի մասին յայտնելով թէ՝ վերջին քանի մը տարիներու ուսումնական յաջողութիւնները կը պարտինք Պարոն Նշանին: Ան եզրափակեց բովանդակալից իր ճառը շնորհակալութեան խօսքերով, որ գնահատուեցաւ ներկաներուն կողմէ բուռն ծափահարութիւններով:

Յարգելի տնօրէնի խօսքի աւարտին, աշակերտուհիի մը ձեռամբ ծաղկեփունջ մը նուիրուեցաւ օրուան նախագահուհի Տիկին Նուարդ Մեսրոպեանին:

Հուսկ ուրեմն, փակման խօսք ընելու հրաւիրուեցաւ հովանաւոր Սրբազան Հայրը: Ան իր խօսքը սկսաւ յայտնելով թէ՝ *"Նոր էջ մը բացուեցաւ այսօր, Գալուստեան Ազգ. վարժարանին համար, այս հանդիսութեամբ"*: Հակիրճ իր տուած պատգամին մէջ, առաջնորդ Սրբազան Հայրը առաջարկեց, որ Միջին Արեւելքի մէջ հայկական վարժարաններէն ներս հայերէն լեզուն զօրացնելու մտահոգութեամբ, ժողով մը գումարուի Եգիպտոսի մէջ, ուր պաշտօնապէս հրաւիրուին թեմերու առաջնորդներն ու հայկական վարժարաններու տնօրէնները, որ ծրագրային աշխատանք տարուի, հայ աշակերտին նոր մեթոտներով սորվեցնելու համար, իր մայրենի լեզուն: Սրբազան Հայրը

